# ԳԻՏԱԿԱՆ ԾՈՂԵՐ

ԳՐԵՑ

ԽՈՐԷՆ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՄԽԻԹԱՐԵԱՆ

Ծաղկաքաղ ընելով իմացական փիլիսոփայութենէն եւ 1899 ի Պոլիս տպեալ Հոգեբանութենէ եւ ուրիշ զանազան իմաստասիրական եւ բարոյական գըր-ուածներէն, զորս իբրեւ դաս աւանդեց Եդեսիոյ վանուց որբանոցի առաջադէմ աշակերտներուն :

معارف عموميه نظارت جليله سنك ٢٣ ربيع الاول ٣١٩ و ٢٦ حزيران ٣١٧
تاريخلو و ١٨٨ نومرولو رخصتنامه سيله طبع اولنمشدر

Կ. ՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Յ. ՄԱՏԹԷՈՍԵԱՆ

1901

# ԳԻՏԱԿԱՆ ՇՈՂԵՐ



ԽՈՐԷՆ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՄԽԻԹԱՐԵԱՆ

Ծաղկաքաղ ընելով իմացական փիլիսոփայութենէն եւ 1899 ի Պօլիս տպեալ հոգեբանութենէ եւ ուրիշ զանազան իմաստասիրական եւ բարոյական գրուածներէն, զորս իբրեւ դաս աւանդեց Եդեսիոյ վանուց որբանոցի առաջադէմ աշակերտներուն:

معارف عموميه نظارت جليله‌سنك ٢٣ ربيع الاول ٣١٩ و ٢٦ حزيران ٣١٧
تاريخلو و ١٨٨ نومرولى رخصتنامه‌سيله طبع اولنمشدر

Կ. ՊՈԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Օ. ՄԱՏԹԷՈՍԵԱՆ

1901

Միտք եւ նիւթ, զօրութիւն եւ շարժում, լոյս եւ ջերմութիւն, ըստ նախասահմանեալ ներդաշնակութեան ամենակարող արարչապետի բացարձակ կամեցողութեան տակ՝ բնական եւ բարոյական օրինօք անդադար կը գործեն տիեզերաց մէն մի մասերու մէջ, եւ այս գործունէութեան նպատակի եզրակացութիւն բուն ճշմարտութեան հասնելու յառաջ կը դիմէ:

# ԿԱՆԽԱԲԱՆՈՒԹԻՒՆ

Սոյն գիտական հոգեբանական եւ բարոյական կըրթական շողերէն գոյնզգոյն լոյսերը առաջ գալով, մտաւորական մարդոյն հոգւոյ խորհուրդները լուսաւորելու, եւ զայն ինքնաճանաչութեան առաջնորդելու, եւ մարմինը կրթելով ուսմամբ, գիտութեամբ, սրտի ազնուութեամբ, զայն բնական կենդանիներէն որոշելով, իբրեւ բարոյական էակ, բարձր դիրքի մը բարձրացնելու կարողութիւն ունին:

ԽՈՐԷՆ ԵՊԻՍԿ. ՄԽԻԹԱՐԵԱՆ

# ԳԻՏԱԿԱՆ ՇՈՂԵՐ

**Հարցում.** — *Սկզբնական Գիտութեան եւ իմաստութեան ծագումն ո՞ւրկէ է։*

**Պատասխան.**—*Սկզբնական գիտութեան եւ իմաստութեան ծագումն, ամէն պատճառներու նախնական սկզբնապատճառ արարածոց արարչի ամենակատարեալ իմաստութեան խորհուրդներէն կը հոսի, եւ առաջ կուգան մարդոյն մտաց խորհուրդները զօրացնելու եւ սիրտն ազնուացնելու եւ զայն ինքնաճանաչութեան եւ բարոյական պարտազգացութեան հրաւիրելու։ Եւ խորհրդածեալ գիտութիւնք ձեռք բերելու։ Իմանալ պէտք է թէ, Աստուծոյ գիտութիւն եւ իմաստութիւնը միշտ անփոփոխ է, զի Աստուածն, ամենագէտ եւ ամենատես է, բայց ստեղծական մարդոյն գիտութիւն եւ իմաստութիւն, թէ սահմանաւոր եւ թէ անկատար է, եւ թէ նիւթական առարկայից փոփոխութեանց հետ, գիտութիւն եւս փոփոխութիւն կը կրէ, զի փոփոխական խառըն ի խուռն առարկաները, ստուեր կը ձգեն մարդոյն մտաց խորհուրդներու վրայ, եւ չեն թողուր որ մարդն, առոյգն եւ ճշմարիտն պայծառ կերպով ճանաչէ եւ ճըշմարտութիւնները, իրենց իսկական պատկերաւ ի հանդէս բերելով բացատրէ։ Աստուծոյ գիտութիւն եւ իմաստութիւն, իւր էութենէն եւ բնութենէն առաջ կուգան եւ միշտ անփոփոխ են։*

**Հ.** — *Մարդն ի՞նչ տեսակ գիտութեամբ կը կենցաղավարուի։*

Պ. — Մարդն երկու տեսակ գիտութեամբ կը կենցաղաւարուի, առաջին ինքնաբերական կամ բնազդեցական գիտութեամբ կը գործէ, այս գիտութեան մէջ, մարդն եւ ամէն կենդանիները հաւասար են, եւ այս գիտութիւն, ի սկզբանէ, ըստ նախասահմանեալ տնօրինութեան, բնութեան մէջ զետեղուած է, եւ բնութիւն ինքը կը սորուեցունէ մէն մի կենդանեաց, իրենց պէտք եւ պիտոյք հոգալու զգացմամբ, այս գիտութեան ուսուցիչն բնութիւն է, թէ մարդն եւ թէ ամէն կենդանիներ ինքնաբերաբար կ'ուսանին բնութենէն, այս գիտութեան համար ուրիշ վարժապետի պէտք չի կայ։ Բայց այս գիտութեան նախնական ուսուցիչ եւ օրէնսդիրն մեր պաշտելի Աստուածն է, այլ խնդիր է թէ, բնութեան միջոցաւ ի գործ կը դրուի, որուն համար բնազդեցական գիտութիւն կամ օրէնք կ'ըսուի։

Հ. — Մարդն ինքնաբերական կամ բնազդեցական գիտութենէն վերջ, ի՞նչ տեսակ գիտութեամբ կը կենցաղաւարուի։

Պ. — Մարդն այս գիտութենէն յետոյ, կ'սկսի իրեն հոգեկան կարողական խորհուրդներէն, խղճի օրէնքէն, կրօնական զգացումէն, բարոյական պարտազգացութենէն, ուսանելով, կը յաջողի խորհրդածեալ գիտութիւններով կենցաղաւարուիլ, եւ այս ուսումն եւ գիտութիւն միայն մարդուն յատուկ է, ուրիշ կենդանիներ չունին այս մեծ եւ օգտակար ուսումն եւ գիտութիւն։ Եւ այս գիտութիւններն են, որ չափաւոր սահմանի մը մէջ, զմարդն կը կատարելագործեն, եւ բարոյականի առաքինութեան մէջ կը հաստատեն, եւ այս է մարդուն կոչումը եւ պատուաւորութիւնն բարձրացունողն։

Հարցուած է իմաստասիրին թէ, դու ի՞նչ կը սորուեցնես աշակերտիդ, նա պատասխանած է թէ, ես նոր բան մը չեմ սորուեցուներ, նա ինչ որ ուսանիլ կ'ուզէ,

անոնց ամէնքն ալ իր սրտին եւ հոգւոյն մէջն է ։ Ուրեմն աշակերտ իր ուսանելու առարկաներն իր սրտի եւ հոգւոյն մէջ թող փնտռէ եւ ամէնքն ալ հոն կը տեսնէ ։ Ես միայն աշակերտին ուսանելու ճանապարհ եւ եղանակ ցոյց կուտամ, եւ խառն ի խուռն խնդիրները ճշդելով անոր կը ներկայացունեմ ուսանելու եղանակներով, ասկէ աւելին արդէն ի սկզբանէ հաստատուած է մարդուն սրտի հոգեկան կարողութեանց եւ բնութեան մէջ, թող հոն նայի եւ իմաստասիրէ ։

Հ. — Խորհրդածեալ գիտութիւնն մեզ ի՞նչ կը սորուեցունէ ։

Պ. — Խորհրդածեալ գիտութիւնն իրերու առարկայից սկզբնական պատճառաց եւ հետեւութեանց առաջ բերած արդեանց քննութիւնն է, որուն բուն նպատակն է, ճանաչել, հասկնալ, բացատրել եւ հասկցունել, (այս կը սորվիմք այս գիտութենէն)։ Եւ այս գիտութիւն, չարունակ մարդուն մտաց եւ Աչքի չուրջ, չրջան կը կատարէ, անոնց մէջէն ճշմարտութիւնները փնտռել գըտնել եւ բացատրել, ու ցոյց տալու համար մեզ ։

Հ. — Գիտութիւն կազմելու համար, գիտասէրն ի՞նչ միջոցի կը կարօտի ։

Պ. — Գիտութիւն կազմելու համար, գիտասէրին պէտք է ամէն բանէն առաջ, պատճառներու սկզբնապատճառն ճանաչել եւ ըմբռնել, այսպէս ալ իրաց եւ երեւոյթից պատճառները եւ երեւոյթները, անոնց օրէնքները, սկզբունքները, անոնց յատկութիւնները ի ձեռին ունենալ, որ կարող լինի ճշմարտութեանց մերձենալ ։ Եւ գիտութեան արժանաւորութիւնն, իր աջ բերած եւ յայտնած ճշմարտութեամբն կը բարձնայ ։ Գիտասէր նաեւ պարտաւոր է միշտ իր խորհուրդներուն առարկայ ընել, գոյութիւնը, նիւթը եւ տեսանելի հոգին, զօրութիւն եւ շարժումն ։

Հ. — Նիւթի վրայ խորհող գիտասէր ի՞նչ արդիւնք կ'ունենայ։

Պ. — Նիւթի վրայ խորհող գիտասէրը բնութեան մեկնաբանն կը համարուի, եւ բնութիւնը համատարած բաց մատեան մ'է գիտասէրի մտաց աչքի առջեւ. բնութեան մէջ իմաստունն ալ կը թափառի, տկարամիտն ալ։ Սակայն տկարամիտն թէպէտ կը կարդայ զբնութիւն, սակայն ոչ կը հասկնայ եւ ոչ ալ կրնայ հասկցունել, բայց իմաստասէրն թէ կը կարդայ զբնութիւն, թէ կը հասկնայ եւ թէ կը հասկցունէ ու կը բացատրէ բնութեան ծոցի մէջ պահուած շատ մը գաղտնիքները։

Հ. — Մարդն իւր գիտութիւններն ուրիչ ի՞նչ աղբիւրէ կը քաղէ։

Պ. — Մարդն իւր գիտութիւն եւ իմաստութիւն կը քաղէ Աստուածային գիտութեան եւ իմաստութեան ցոլացումէն, իւր բանական հոգւոյ խորհուրդներէն, եւ իւր մտաց ու սրտի մէջ ի սկզբանէ հաստատեալ խղճի ազդմանէն, բարոյական պարտազգացումէն, նիւթական առարկայից երեւոյթներէն, որք մարդոյն մտաց եւ տեսութեան խորհուրդներու եւ խուզարկութեան տեսանելի պատկերաւ մը կը ներկայանան եւ իմաստասիրելու առիթ կ'ընծայեն։ Գիտասէրը պէտք է որ լաւ ճանաչէ պատճառներ եւ անոնց առաջ բերած արդիւնքները, օրէնք եւ սկզբունքները, նիւթը եւ տարերք, զօրութիւն եւ շարժում, հոգին եւ անոր կարողութիւնները, հոգւոյն իւր մարմնոյ հետ ունեցած կապակցութիւն եւ յարաբերութիւնքն, բարոյական սկզբունք եւ անոնց տարերք, մոլութեանց եւ առաքինութեանց տեսակներ եւ անոնց առաջ բերած մոլութիւնք եւ առաքինութիւնք, նաեւ ճշմարտութեանց եւ արդարութեան սկզբունքները, եւ հետեւի փորձառական գիտութեանց, որք մեծապէս կ'օժանդակեն գիտասէրի հմտութիւնքն

ւելցնելու։ Զի այս գիտութիւն մարդոյն կը ներկայացունէ զնիւթն եւ զգալի առարկաները, եղելութիւնները եւ անոնց յաջորդական շարունակութիւնք, մարմիններու միմեանց հետ ունեցած կապակցութիւնք, բնական զօրութեանց, շարժմանց, օրինաց մարմնոց վրայ ըրած ազդեցութիւնք։ Այս գիտութեան մէկ ճիւղն է ծառայական արհեստները, որք աշխատութեամբ կ'ստացուին եւ օրէնքներով կը չափուին։ Խորհրդաւոր գիտութիւնը վերոյիշեալ առարկայից եւ եղելութեանց բանաւոր մեկնութիւն եւ բացատրութիւն կուտայ հասուն խորհուրդով եւ ապացոյցներով, իմաստասիրութիւն զմարդն կառաջնորդէ տրամաբանական ձեռնարկութեամբ, ճշմարտութիւններ փնտռել գտնել եւ բացատրել։ Հոգեբանական գիտութիւն զմարդն ինքնաճանաչութեան կը հրաւիրէ, ցոյց տալով թէ հոգին իւր մարմնոյն հետ ի՞նչ կապով կապուած է, եւ ո՞ր մասերն են գործողութեանց մէջ որ հոգւոյն, եւ ո՞ր մասերն են որ մարմնոյ միջոցաւ ի յայտ կուգան եւ հոգւոյն կը հաղորդուին։ Բարոյական գիտութիւնը մարդուն պարտուց եւ իրաւանց սահմանը կը գծէ եւ օրէնքով, մոլութիւնները առաքինութիւններէն կ'որոշէ պարզ կերպով։

Մարդն փորձառական գիտութեան մէջ՝ դիտող է, բանականի մէջ՝ մեկնող է, իմաստասիրութեան մէջ՝ ճշմարտութիւնները փնտռող է, կրօնքի մէջ՝ պարզ հաւատացող է սրտով եւ հոգւով։ Պէտք է համոզուիլ թէ գիտութեանց եւ իմաստութեանց չափ օգտակար բան չ'կայ, զի առանց գիտութեան, տիեզերք եւ կեանք անստուգութեան մէջ, եւ մարդն կարծեաց եւ կասկածանաց մէջ կը մնայ։

Հ. — Ի՞նչ է գոյութիւնը։

Պ. — Ամէն երեւոյթներ իր մը կամ բան մը կը յայտնեն, եւ այն իրը կամ բանն ալ հիմն է այն գոյու-

թեան կամ երեւոյթին ։ Մարդն եւ նիւթն երեւոյթ են , որք կը տեսնուին եւ ասոնք գոյացութիւն են , զի կը համապատասխանեն իրենց երեւոյթին ։ Մարդուն կազմութեան մէջ թէ տարրական նիւթ կայ , եւ թէ աննիւթ հոգի կայ , որոց երկուքն ալ գոյացութիւն են , մինն է աննիւթ գոյութիւն , միւսն է նիւթական գոյութիւն , ասոնց մինն տեսանելի է , որ մարմինն է , իսկ միւսն հոգին է , որ անտեսանելի . աննիւթ հոգին անտեսանելի է ։ Ստոյգ էութիւն եւ գոյութիւն կը համարուի այն բանը . որ այն բանն ալ գործելու կարողութիւն եւ զօրութիւն ունի եւ շարունակ կը գործէ . մարդուն միտք եւ մարմինը իրենց առանձին գոյութիւն եւ յատկութիւնն ունին , բայց միմեանց հետ միացեալ իբրեւ մէկ անձնաւորութիւն կը գործեն իրարմէ անբաժանելի , մարմնոյ առաջ բերած գործերը թէ կը չօշափենք եւ թէ կը տեսնեմք , բայց հոգւոյ խորհուրդները անտեսանելի են , զգացումն անչօշափելի է , կամքը կարող չեմք ճանաչել , միայն թէ մենք հոգւոյ գործերը, կարողութիւն, զօրութիւն եւ շարժումը իրենց առաջ բերած երեւոյթներով կը ճանաչեմք ։

Հ. — Ինչ է նիւթն ։

Պ. — Նիւթն , իւր ամբողջութեամբն առնելով , հաստատուն , հեղուկ եւ կազային մարմիններն են , որք իրենց սեպհական յատկութեամբն կը բաժնուին իրարմէ ։ Նիւթի տարրական մասունքներ միմեանց մօտ բերող , կապող եւ միացնող , շարժումն եւ զօրութիւնն են ։ Մենք նիւթի եւ զօրութեան առաջ բերած արդիւնքները գիտեմք եւ կը ճանաչեմք . բայց նիւթի ներքին էութեան եւ բնութեան ինչ ըլլալը չեմք գիտեր ։ Իմաստասէրներէն ոմանք ըսած են նիւթի համար թէ , չօշափելոյն ստոյգ էութիւնն՝ անչօշափելոյն մէջն է , բաժանելոյն՝ անբաժանելիին, տեսանելին՝ անտեսանելիին , լսե-

լոյն՝ անլսելիին մէջն է, որ կ'երթայ արարչի գաղանի պահած խորին խորհրդոց մէջ կը կայանայ:

Հ. — Ի՞նչ է զօրութիւն եւ շարժում:

Պ. — Զօրութեան եւ շարժման սկզբնապատճառն, զհոգին եւ զնիւթն ի սկզբանէ գոյութեան բերող էակն, ինքն գիտէ թէ ինչ են զօրութիւն եւ շարժումն, զի նորա անօրինութեան նախասահմանադրութիւններն են:

Մենք շարժման եւ զօրութեան ինչ ըլլալու վրայ անկարող եմք խօսելու, միայն անոնց առաջ բերած երեւոյթներու վրայ կրնամք խօսիլ:

Զօրութիւն կ'ըսուի այն երեւոյթին եւ կարողութեանց, որք կարողութիւն ունին շարժումն առաջ բերելու եւ դադրեցնելու:

Գիտութիւն, բնական զօրութեանց եւ շարժմանց վրայ խօսելով, ոչ թէ անոնց ինչ ըլլալը կը բացատրէ, այլ անոնց միօրինակ գործելու անփոփոխելի օրինաց հաստատուն լինելը կ'ապացուցանէ:

Ամէն առեղծական մարմիններ, իրենց մէջ շարժումն եւ զօրութիւն կը կրեն, որով կը շարժին եւ կը գործեն: Բնական բոյսերէն ոմանք թունաւորելու, ոմանք ալ բժշկելու զօրութիւն ունին, անասունք եւ մարդիկ իսկ զօրութեան եւ շարժման միջոցաւ կը շարժին, մերթ շահ եւ մերթ վնաս առաջ կը բերէն:

Առանց զօրութեան եւ շարժման տիեզերք մեռեալ դիակ մը կը դառնայ, ամէն գործելու կարողութիւնք, շարժման եւ զօրութեան արդիւնքն են:

Շարժումն եւ զօրութիւն ամենակարողին Աստուծոյ գործիքներն են, որ ամէն բանի մէջ անդիմադրելի պով կը գործեն. թէեւ բնութիւնն ալ երբեմն իւր բնական գործունէութեան մէջ զարտուղութիւններ կը մուծէ:

Հ. — Ի՞նչ է զգացողութիւն:

Գ. — Ամէն մարդ քիչ կամ շատ զգացողութիւն ունի եւ կ'զգայ եւ զգացողութիւն մարդուն հոգւոյ մէկ մասն է, բայց զգացողութիւն, միայն կ'զգայ, գիտութիւն չունի, միայն միջոց մ'է գիտութիւն ձեռք բերելու, զգացողութիւն, իրաց պատճառներ ցոյց տալու անկարող է. զգացողութիւն կրակի ջերմ ըլլալը կը զգայ, բայց թէ ինչո՞ւ ջերմ է, անոր պատճառը չը գիտեր, եւ մութ խնդիրները բացատրելու համար, պատճառ եւ օրէնք գիտնալ պէտք է։ Մարդուն զգացողութեան համար օրինակ մը բաւ է։

## ՕՐԻՆԱԿ ՄԸ

Իմաստասէրը, ծովու եզերք աւազի կոյտ մը տեսած ժամանակ, քննելով կ'իմանայ թէ այն աւազը հոն բերող պատճառը, կամ հովն է, կամ ծովու ալիքը, այս բաւական չէ խնդիրը լուսաբանելու, օրէնքն ալ գիտնալու է, զի օրէնքը պատճառի եւ արդեանց հարկաւոր յարաբերութեան, այսինքն նախորդի եւ յաջորդի պատճառականութեան մեկնողն է։ Իրի մը պատճառն գիտնալը բաւական չէ, ուրեմն հանգամանքներ եւս բացատրելու համար օրէնք գիտնալ պէտք է, զի գիտութիւնը, երբ մասնաւոր պարագայ մը հանրական օրէնքի տակ կը դնէ, զայն մեկնած կը համարէ. աւազ բերող պատճառն հովն կամ ալիքն էր, այդ պատճառի պատճառն ալ, շարժման եւ կամ թէ բախման մեքենական օրէնքն էր։

Պատճառ եւ օրէնք նիւթական գիտութեանց մէջ միշտ կարեւորն է, իսկ վերացական գիտութեանց մէջ, երբ բացատրող պատճառ չ'գտնուի, հոն ալ երկու-

ճշմարտութեանց յարաբերութիւն փնտռելու է, որոց մինն սկզբունքն է, միւսն անոր յետեւութիւնն է։

Սոյն սկզբանց եւ յետեւութեանց յարաբերութիւնք որչափ որ օրէնք մ'են, բայց գոյացութեանց կը վերաբերին եւ ոչ թէ յաջողութեանց, վասնզի սկզբնապատճառն կը ստեղծէ, բայց ստեղծեալներն իրեն յաջորդները չեն, նոքա ստեղծեալներու մէջ կը մնան։

Սկզբունք իւր յետեւութեան պատճառն է, եւ ամէն բանի սկզբնապատճառն բացարձակն է, եւ այն է մեր պաշտելի արարիչն արարածոց Աստուածն։

Հ. — Ի՞նչ է տեսական գիտութիւնը։

Պ. — Տեսական գիտութիւնն իրաց հայեցողական ծանօթութիւնն է, իսկ գործնական գիտութիւնը գործողութեանց մէջ կը կայանայ, եւ գործողութիւնք նիւթական գիտութեանց մի վերծանութիւնն են։

Մարդուն գիտութիւն, իւր գործողութեանց կարողութեան չափն է. մարդն իւր գիտութեան չափով կրնայ իշխել բնութեան վրայ, գործնական գիտութիւնը տեսականէն կախեալ է, զի տեսականն է, որ կը նախատեսէ, եւ գործնականի կը վերածէ, տեսականն է որ կը քննէ եւ երեւան կը բերէ զպատճառն եւ օրէնք, սկզբունք եւ արդիւնք, փորձ եւ արդարութիւն, դիտողութիւն, վերլուծութիւն, շարժում, զօրութիւն, իրաց յատկութիւնք, կարողութիւնք, ծանօթ երեւոյթներ, բաժանում, միացում որոցմով ճանապարհ կը բանայ արհեստաւորին, իւր արհեստին դէպ ի յառաջադիմութիւն մղում տալու։ Վերոյիշեալները տեսական գիտութեան ծնունդներն են, կամ թէ տեսական գիտութեան մէջ պահուած գործնական գիտութեանց գաղտնեաց բանալիներն են։

Հ. — Որ նախադասութիւններն են որ սկզբունք կը համարուին։

Պ. — Ամէն սկզբնաւորեալ սկզբունքներու սկզբնապատճառ անսկիզբն Աստուած մեր պաշտելին, սկըզբունքն. ամէն հունաւոր եւ ստեղծականի, երկրորդական պատճառին սկզբունքներուն, որք ստեղծեալներու մէջ միայն սկզբունք կը համարուին, պատճառական զօրութիւնք, եւ մնաց կարողութիւնք, սկզբունք են, զի պատճառներ իրենց արդիւնքով ցոյց կուտան, հանրական նախադասութիւնք, սկզբունք են, զի տրամաբանական նախադասութիւնք կը կազմեն, բաղկացուցիչ տարերք սկզբունք են, բնական օրէնք եւ զօրութիւնք, սկզբունք են, գիտութեանց վերաբերեալ հանրական ճշմարտութիւնք, սկզբունք են, զի նոքա զգիտութիւն կը մեկնեն, բանական գաղափարք, որք բացարձակի մէջ պարունակուած են եւ հունաւորանց սահմանաւորաց մէջ կը գտնուին, եւ գիտութեաց ու խորհրդոց եւ ամէն առարկայից հիմունքներն կը կազմեն, նոքա ալ սկզբունք են, նախնական ճշմարտութիւնք առաջ բերող, մեկնողներն ևս բանի սկզբունք են։

Հ. — Ի՞նչ է հոգին։

Պ. — Ըստ ոմանց հոգեբանից, հոգին մարդուն կենսական սկզբունքն է, իսկ միտք եւ իմացականութիւն, մարդուն հոգւոյ հմտութեան աղբիւրներն եւ կարողութիւններն են։

Անստեղծն եւ անսահմանն Աստուած զուտ եւ անխառն միտք է, զի անմարմին է, իսկ մարդուն հոգւոյ հետ միացեալ միտքը որ նիւթական մարմնոյ հետ առընչութիւն ունի, կը տարբերի Աստուածային զուտ եւ անխառն միտքէն, սակայն կրկին անգամ մարդուն հոգեկան կարողութեանց մի պատուական մասն է, եւ հոգեբանական գիտութեանց առարկայ է. սակայն ըստ մեր ըմբռման հոգին անտեսանելի, անըմբռնելի էութիւն մ'է, մեր մէջ բնակեալ եւ մեր մարմնոյ հետ միացեալ,

տակայն մենք, հոգւոյն էութեան եւ չինչութեան ինչ ըլլալն չեմք գիտեր, միայն անոր կարողութիւններէն առաջ եկած գործեր եւ արդիւնքներ, որք մեզմէ կը տեսնուին եւ կ'ըմբռնուին կը ճանչուին, զանոնք գիտեմք, եւ անոնք են, որ զմեզ ինքնաճանաչութեան կ'առաջնորդեն։ Եւ զմեզ ինքնաճանաչութեան հրաւիրողներն են, հոգւոյ խորհուրդները, խղճի օրէնքները, կրօնական զգացումն, եւ բարոյականի պարտազգացութիւն, եւ այս բարեմասնութիւնք միւս կենդանիներն չունին, անոր համար բնական օրինաց մէջ կ'ապրին։

Մարդուն միայն իւր ամբողջութեամբ առնելով մի եւ անբաժանելի էութիւն, զօրութիւն եւ բնութիւն մ'է, բայց այն միութեան մէջ երեք բաժանումներ կան, որով մեր հասկցած լեզուով, իմացականութիւն, զգացողութիւն եւ կամք կ'ըսեմք։ Մասց իմացականութեամբն է որ մարդն կ'իմանայ, կը տրամաբանէ, կը խորհի, եւ իմացականութիւն մեր բոլոր հմտութեանց աղբիւրն է, որ երկուքի կը բաժնուի, արտաքին եւ ներքին, զի իմացականութիւն թէ արտաքին առարկաներէն հմտութիւններ կը քաղէ, եւ թէ ներքնածին հմտութիւններ կը ստեղծէ եւ անոնց վրայ խորհրդածութիւն կը կատարէ։

Ըստ ոմանց հոգեբանից տեսութեան, հոգւոյ խորհուրդներու կեդրոն մարդուն ուղեղին մէջն է, (բաց ի բնական կիրքերն եւ բաղձանքներն, որք մարդուն սրտի արուարձաններու մէջ կը բնակին), հոգին թէ կ'զգայ եւ թէ կը խորհի, իսկ կիրք եւ բաղձանքներն, թէպէտ կ'զգան, բայց խորհելու կարողութիւն չ'ունին, աւելի բնականի օրինաց կը հետեւին, լոկ զգացողութեամբ։

Մարդուն իմացական կարողութիւնք, գիտես թէ որդուն ներսէն ցոլանալով, կերթան դուրսի արտաքին առարկաներու հետ հաղորդակցութեան մէջ կը մտնեն, անոնց պատկերակերպութիւնք ժողվելով, մարդուն

մարմնոյ զգայարանաց միջոցաւ կը տանին ներս զգացման ջիղերուն եւ իմացականութեան խորհրդածութեանց կը յանձնեն ։

Եթէ զգայարանաց կամ զգացողութեանց, այս կամ այն մասը խանգարուի, հոգին անձեռնհաս կը մնայ տեղեկութիւն առնելէ, մինչեւ որ վնասուածներ կազդուրուին եւ առողջանան, սակայն գիտնալ պէտք է թէ, վնասուողը հոգին չէ, այլ զգայարանաց այս կամ այն մասն է, որք կը կազմուին մարմնոյ լրատու ջիղերէն ։

Պէտք է լաւ ըմբռնել թէ, այլ են զգայարանքներ որք մարմնոյ մասունքներն են, այլ է զգացողութիւն, որ հոգւոյ մի մասն է, բայց աւելի բնականին հետեւող է։

Հոգին կարողութիւն ունի զգալու, ըմբռնելու, խորհելու, դատելու, տրամաբանելու, յիշելու, երեւակայելու, չարը բարիէն որոշելու, զուգորդելու ։ Այսպէս ալ տեսնել, լսել, շօշափել, հոտառութիւնք եւայլն բաները, որք մարմնոյ զգայարանաց միջոցաւ տեղի կ՚ունենան եւ կը տեսնուին, անոնց ամէնքն ալ մարմնոյն չէ, հոգոյն է, հոգին է որ կը տեսնէ, կը լսէ, մարմնոյն զգայարանաց միջոցաւ. զգայարանքները հոգւոյն առջեւ միայն լրատու գործիքներ են ։

Զգացողութիւն, մարդուն ներս կը լինի եւ ներս կը մնայ, իսկ իմացումը դուրս կ՚ելլէ եւ առարկաներէն հմտութիւններ կը ժողովէ զգայարանաց միջոցաւ, ներս կ՚առնէ կը տանի հոգեկան կարողութեանց կը հաղորդէ, հմտանալու համար ։ Թէպէտ հոգին մի է եւ անբաժանելի, բայց կարողութիւնք զատ զատ են, զի ըմբռնել, յիշել, երեւակայել, դատել, տրամաբանել հոգւոյ իմացականի հետ սերտ կապ եւ առնչութիւն ունին, իսկ հաճոյք եւ ցաւ, սէրը եւ ատելութիւն, զգայականի հետ հաղորդակից են, զի կիրք են ։

**Շարժառիթք եւ Նպատակք Թէպէտ կամեցողութեան**

պայմաններն են, բայց իրենք կամեցողութիւն չեն, թէլադիր են կամաց։ Իմացումը, զգացումը երբեմն իրարմէ անկախ կը գործեն, երբեմն ալ իմիասին կը գործեն։

Ստոյգ է թէ կամքը իմացականէն կ'առաջնորդուի, բայց երբեմն ալ իմացականէն եւ զգայականէն անկախ կը գործէ, մերթ կիրքերէն եւ հաճոյքներէն, մերթ սխալ տեղեկութիւններէն բռնադատուելով։ Ստոյգ է թէ զգացումն եւ իմացումն կամքէն առաջ են, բայց կամք միշտ ազատ է իւր վճիռներու մէջ, զի վճիռները կամքէն կախումն ունին։

Ա՛յլ է տպաւորութիւն, որ մարմնոյն վրայ տեղի կ'ունենայ, ՝ա՛յլ է զգայութիւն եւ ըմբռնում, որք հոգւոյն երեւոյթներն են եւ հոգւոյն մէջ տեղի կ'ունենան։ **Տպաւորութիւնք** կրկնութեամբ ունակութեան կը փոխուին։

**Զգացումն** երբեմն մարմնոյն կ'ազդէ, երբեմն ալ հոգւոյն կ'ազդէ. ըմբռնումը նիւթի կը կարօտի որ ըմբռնէ, զի առարկայ չեղած տեղը ըմբռնում չի լինիր։

**Յիշողութիւն**։ Երբ միտք բան մը կ'ըմբռնէ եւ կը պահէ, եւ վերջէն կը մոռանայ, յիշողութիւնը այն խնդիրը յիշելով մտքին կը ներկայացունէ։ Եթէ միտք իւր ըմբռնածները ծածուկ՝ պահէր եւ կարողութիւն չունենար զանոնք յիշելու, այն ժամանակ, ամէն բան կորսուած կը համարուէր։

Մենք բան մը սորվելու եւ մեր մտաց մէջ պահելու համար, այն բանը քանի մը անգամ կարդալու եմք որ չի մոռնամք, եւ բան մը լաւ ըմբռնելու համար լաւ աղրութիւն ընելու եմք զայն լաւ կարդացած ժանակ։

Երբ շատ մը առարկաներ մէկէն կը ներկայանան աչքի տեսութեան, մենք անոնց մէկին կամ երկու-

քին վրայ ուշադրութիւն կը դարձունեմք, բայց միւսներուն նշանակութիւն չեմք տար, այս պարագայիս մէջ, մեզ հաճելիները կ'ըմբռնենք, միւսները անծանօթ կը մնան մեր ըմբռնումէն ։

Ծեր մարդոց զգայարանքները տկարանալուն պատճառաւ, նոցա յիշողութիւն կը տկարանայ, լաւ չեն յիշեր անցեալները, զի նոցա ըմբռնումները եւս տկարացած են, իսկ երիտասարդաց ըմբռնում զօրաւոր է, անոնք լաւ կը յիշեն, իմաստասէրք, իրենց յիշողութիւն չի մշակելու համար, շատ մանր մունր բաներ չեն յիշեր, եւ ոչ ալ անոնք կ'ըմբռնեն, իսկ գործող արհեստաւորներ, թէ լաւ կ'ըմբռնեն եւ թէ լաւ կը յիշեն ։ Զուգորդութիւն ունակութեան արդիւնքն է, եւ այն ըմբռնումն է, որ կերթայ յիշողութեան, երեւակայութեան հասարակ օրէնքին կը հպի, յիշողութիւն եւ երեւակայութիւն զուգորդութեան եղանակաւորութիւններն են ։

Ըմբռնումը վերըմբռնումէ առաջ է, զի մարդն նախ կ'ըմբռնէ, յետոյ մոռցածը կը վերըմբռնէ ։ Ունակութիւն երկուք է, մինն է բնախօսական, միւսն է հոգեբանական ։ Հակամէտութիւն տեսակ մը սէրէ, զի մարդն իւր սիրածի կողմն կը հակամիտի . սէրը մարդուն հաճոյքներու յատկանիշն է, որու շուրջ միշտ շրջան կը կատարէ մարդն ։

Երբ մարդուն ունակութիւն, հակամիտութիւն եւ շարժումն, զկամքն իրենց հաճոյքներու բնականի չափազանցութեան կողմն տանին, հոն կիրք ըսուած բանը երեւան կուգայ, եւ կիրքերը շարժութեանց բարձրագոյն աստիճաններն են . երբ շարժութիւնք զօրանալով մեծ կարողութիւն մը ձեռք բերեն, մարդուն հոգւոյ ազնիւ մասանց վրայ կը բռնանան, կիրք կը կոչուին, եւ կիրքերը մարդուն զգայական ունակութիւններն են,

ող խնդիր է թէ, այն ունակութիւնք որ բարոյն մէջ արմատացած են եւ հոգւոյ կամեցողական օրինաց կը հնազանդին, հոն ազնիւ կիրք կը համարուին ։ Կիրքերը պատահական հիւանդութեանց կը նմանին, մերթ կը հիւանդանան, մերթ կ'առողջանան ։

Կիրքեր, կամաց իշխանապետութիւն բռնաբարած միջոցին, իրենց հաճոյքներ եւ բաղձանքներ կատարել կուտան կամաց, թէպէտ կամքը, իմացականի ընկերակիցն է, զի անկէ կը քաղէ իւր խորհուրդները, բայց իմացականը, խորհրդատու է, իսկ կամքը՝ վճռատու, հետեւաբար կամք շատ անգամ իմացականին, բանականին դէմ դնելով, իւր ուզած կը վճռէ, մարդն պէտք է որ կամքն առաքինութեան կողմ չահ է, դժուարութենէն խրտչելու չէ, զի դժուարութիւնք զառաքինութիւն արատաւորելու էական բան մը չեն, շատ է որ հոգ տարուի կամքը վարժեցնելու դէպ ի բարի ունակութիւն։

Առաքինութիւնը, բարոյականութեան մէջ, տեսակ մը անխախտականութիւն է, առաքինութիւն եւ ունակութիւն միմեանց լրացուցիչ կը լինին, ջանից եւ աշխատութեանց զօրութեանց առջեւ ։

Կրթութիւն զմարդն իբրեւ ճշմարիտ մարդ զարգացունելով կատարելագործելու արհեստանոցն է, զի կըրթութիւնն է որ, մարդուն բնականի բնութեան մոլութեանց տգեղութիւնը ցոյց տալով, մարդուն կամք զօրացունելով, խորհուրդները վսեմացունելով, սրտի զգացումները ազնուացունելով, զմարդն խղճի, կրօնի եւ բարոյականի սուրբ եւ նուիրական օրէնքներու գործադրութեան կ'առաջնորդէ ։

Կրթութիւն սիրող մարդն չարերուն չընկերանար, արիներու բարի օրինակներուն կը հետեւի, եւ իւր կարդացած գիրքերու մէջէն բարիներ կը ժողովէ եւ իւր մտաց շտեմարանին մէջ կը պահէ, պէտք եղած ժամա-

նակ զանոնք յիշողութեան միջոցաւ դուրս կը հանէ եւ բարի նպատակներու համար ի գործ կը դնէ . նա ազեղ եւ բարոյականութիւն խանգարող գրուածներ չի սիրեր , չընդունիր , զանոնք արհամարհելով իւր մտքէն եւ հասուն խորհուրդներէն կը հեռացունէ ։

Տղայի մը ուսմունք եւ գիտութիւն հաղորդելու համար , նորա հաճոյքներուն արթնութիւն տալ պէտք է , զի հաճոյքը հոգւոյ իմացականի գործելուն չափն է . ուսանողը բանէ մը որչափ հաճոյք զգայ , այն չափէն աւելի սիրով եւ աշխուժիւ կը մօտենայ իւր ուսանելի առարկան ձեռք բերելու ։ Տղայ մը մէկ անգամ ուսման հաճոյք ունենալէն վերջ , կարելի է ամէն բանէն ձանձրանայ . բայց ուսանելէն եւ հասկնալէն բնաւ չի ձանձրանար , զի հրապոյր գրգռիչ է իմացականին , եւ ուսանելու գաղտնիքը հրապոյրի եւ սիրածի մէջն է ։

Մանուկը իւր սրտի սիրածը չուտով կ՚ուսանի եւ կը հասկնայ , զի խորհուրդները սրտի ներշնչմանց եւ զգացման շատ կը հետեւին . անկեղծ եւ բուռն սէրը շատ մը գիտութեան ծնունդ տուող միջոցն է ։ Գործունէութիւն առաջ տանողը հաճոյքն է , զի հաճոյքէն առաջ կուգայ գործունէութիւն , բայց տղայք իրենց մանկական հասակին մէջ՝ ուսանելէն աւելի խաղալը կը սիրեն , բայց հմուտ մանկավարժը , տղուն ընկերանալով , նորա հաճոյից համաձայն կը գործէ , անոր հետ կը խաղայ , բայց խաղալու ձեւակերպութեան տակ , նորա մատաղ մտաց մէջ կը զետեղէ ուսման սէրը , որով խաղի սէրը հետզհետէ ուսանելու սիրուն կը յաջորդէ , զի հետաքրքրութիւնը կ՚ստիպէ տղան միշտ հարցունել իւր սիրած բաները եւ տեղեկանալ , եւ ասիկայ ուսուցանելու մի սկզբնական եղանակն է ։

Փորձն զմեզ կը համոզէ թէ ամէն ուսեալ չի կրնար ուսուցանել , զի ուսուցանելու համար տղու եռանդ եւ

տրամադրութիւն փնտռել պէտք է, զի այն տղան որ ի բնէ տրամադիր չէ, ուսուցիչը չի յաջողիր ուսանողի բնութեան խորերէն բղխած թերութիւնները ջնջել եւ տղան բարոյականի կատարելութեան բարձրացունել։

Ուսուցիչը պէտք է որ աշակերտի զգացումները վառ պահէ. սուտ է թէ զգացումը ինքնին գիտութիւն չէ, զի առարկաներու պատճառները չի գիտեր, բայց զգացում ճանաչել, մինչ կը դառնայ մանկական պատճառները ճանաչելու եւ բացատրելու, որ ուսման նախաշաւիղն է։ Ուսուցչի առաջին պարտքն է, տղայի մտաց մէջ ուղիղ խորհուրդ, եւ բարեսէր կամք ներշնչելով զայն ուղղութեան մէջ հրահանգել։ Միմիանց հակառակ հաճութեան տհաճութիւն մը կայ բնութեան մէջ։

Տհաճութիւնը տղային ձանձրոյթ կը պատճառէ, անոր համար տղային երբեմն կարդալ, երբեմն գրել եւ երբեմն ալ խօսիլ տայ ուսուցիչը, որ տղան, չի ձանձրանայ, միտքը թարմ մնայ եւ չի տաղտկանայ զի տաղտկացեալի հաճոյքը, տհաճութիւն կը պատճառէ տղային, տաղտկացեալ միտքը հաճոյք չի զգար։

Աշակերտին ստէպ յանդիմանութիւն եւ գաւազան սովորական կը դառնայ եւ անոր զգացումները կը խանգարէ. ծանր պատիժներ, մեծ յանցանքներու համար պահելու է. տղայի մը համար, մէկ խոժոռ նայուած ամենամեծ յանդիմանութեան տեղ կը բռնէ։

Բաղձանքներ կան, որք անսահման են, նոքա, թէ առաքինութեանց եւ թէ մոլութեանց մէջ, բնաւ չեն կշտանար, եւ ասոնց տեսակին կը վերաբերին կիրքերը, սէրը, ագահութիւնը, փառամոլութիւնը, եւ ագամոլութիւնը եւայլք։

Այսպէս նաեւ կրթեալ ազնուազոյն կիրքեր եւ ըղձանքներ կան, որք շարունակ ճշմարիտ բարւոյն, գեղեցիկ վսեմութեան, գիտութեան արհեստի առաքի-

նութեան սիրահարներն են ։ Խոհեմ ուսուցիչը սոյն բարեսէր կիրքերը եւ իղձերու ազնուութիւնը առաջ բերելով, իբրեւ միշտանորոգ սնունդ կը մատուցանէ աղային, կը տպաւորէ նորա սրտի եւ հոգւոյն վրայ ։

Մարդուն յառաջդիմութեան միջոցը շատ քիչ է, ստուերի պէս կուգայ եւ կ՚անցնի կ՚երթայ, մեր առաջդիմութիւնը, մեր կենաց օրերուն չի համապատասխաներ, վասնզի մեր ժամանակը երեք մասի բաժնուած է ։ Մեր առաջին շրջանն է մանկութիւնը, այս շրջանի մէջ լոկ բնազդումն կը տիրէ մեր վրայ, եւ այս շրջանը անասնական է, երկրորդ, չափահասութեան շրջանի մէջ խորհուրդ կը տիրէ մեր վրայ, եւ այս է մեր յառաջդիմութեան շրջանը. սակայն այս շրջանն ալ աղմկալի է եւ խռովայոյզ, որ զմարդն չարունակ կ՚ալեկոծէ բարեաց եւ չարեաց խառնուրդներու մէջ, երրորդ ծերութեան շրջանն է, այս շրջանի մէջն ալ ունակութիւն կը տիրէ ։ Թէ ի՞նչ է ունակութեան օրէնք եւ գործունէութիւն ։ Պէտք է յայտնել թէ ունակութեան գործունէութիւնը, մարդուն կամաւոր կրկնութիւնն է. ունակութիւն, որչափ կրկնուի եւ չարունակուի, այնչափ մեր խորհուրդները կը տկարանան. ունակութեան սովորութեանց առջեւ, եւ մեր վերջի ջանքերը ապարդիւն կը մնան, զի ունակութիւն կը յաղթէ մանաւանդ մեր ծերութեան ժամանակի մէջ ։

Ունակութիւնը երկսայրի սուր է, թէ առաքինութեանց եւ թէ մոլութեանց մէջ. երկուքի մէջն ալ միշտ յաղթող է, ուրեմն երջանիկ են անոնք, որ ունակութիւնը, իրենց բարեգործութեան կողմը կրնան դարձունել իրենց երիտասարդութեան մէջ, իրենց բարձր խորհուրդներու շնորհիւ ։

Մարդուն ծերութեան ժամանակը, մոլի ունակութիւնը, բնազդեցականի պատկեր կ՚ըզգենու ։

Ունակութիւն , սիրելի շապիկ մ՚է , որ առաքինի մարդուն ալ սիրելի է , մոլիին ալ , զի ունակութիւնը երկուքին ալ կը յարմարի , բայց մոլիներու ունակութեան շապիկը որքան որ հագնիլ սիրելի է եւ հեշտ , բայց չուզած ժամանակդ վրայէդ հանել , համարեայ թէ անկարելիութեան աստիճանին կը հասնի , ունակութիւն ստացող մարդ իւր վրայ տիրապետ կը կարգէ զունակութիւնն , նա քաղցրութեամբ կ՚սկսի ․ բայց շուտով բռնապետ կը դառնայ , մարդուն խորհրդոց եւ կամաց վրայ տիրապետելու , եւ զանոնք իւր ետեւէն իբրեւ գերի քաշելով տանելու , մանաւանդ մոլութեանց մէջ ։

Բաղձանք ․ Մարդն կարծես թէ հոգւոյ եւ մտաց , կրից եւ բաղձանաց յուզման խառնակութեններէն բաղադրեալ, կազմակերպեալ էակ մըն է , որ մերթ մարդու պէս մերթ գազանի պէս կը գործէ ․ մարդն ալ շատ անգամ իւր անկարգ բուռն բաղձանաց դէմ կը մարտնչի , բայց չի յաջողիր զայն կրթել եւ բնական բաղձանաց նպատակէն յետս կասեցունել ։ Եթէ այս բանիս մէջ բարեբաղդութիւն մը կայ այն ալ մարդուն կամեցողութիւնն է , որ շատ անգամ բաղձանաց հետ չընկերանար ։ Թէպէտ բաղձանքները կամքէն առաջ են , զի մարդ , նախ բանի մը կը բաղձայ , յետոյ կամքը կուգայ զայն ընդունելու կամ մերժելու ․ բանականութեան եւ կամաց մէջ խորհուրդ կայ ; բայց բաղձանքները խորհուրդ չունին ․ խորհուրդ եւ կամք , աչք ունին եւ կը տեսնեն , իսկ բաղձանքը , աչք չունեցող կոյր մ՚է , եթէ բաղձանք երբեմն առանց խորհրդոյ կամեցողութեան իւր նպատակին հասնի , այդ բանը դէպքի յաջողութեան մէկ բացառիկ պատահումն է ։

Բաղձանքը , որ զգայական գործողութիւն մ՚է , երբեմն զմարդն մարդկութեան սահմանէն դուրս հանելով , անասնոց վիճակին կը մերձեցունէ ։

Բնականի մէջ սիրոյ օրէնք մը կայ, երբ այդ սէրը իւր սիրելի առարկայէն հեռի է, բաղձանք կը համարուի, երբ իր սիրելի առարկային կը դիմէ, հոն ալ ուրախութիւն կը համարուի. ուրեմն սէրը մէկ վիճակ մ'է, ուրիշ վիճակի մը անցնելու հակումը եւ շարժումն, ու գործունէութիւն ունի, որով բաղձանաց բոլոր տարերք ցոյց կուտայ իւր վրայ։

Բաղձանքը, իւր բաղձալի առարկան չը տեսած, զայն երեւակայութեամբ կը վայելէ. բաղձանք միշտ իւր բաղձալին կը փնտռէ, թէ բարի լինի թէ չար, շատ է որ իւր սիրելի է։

Մինչեւ որ բաղձանքը չ'շարժի, որեւէ գործողութիւն չի լինիր, ա՛յլ է, ուրախութիւն, այլ է հաճոյք. հաճոյքը, թէ հոգւոյ եւ թէ մարմնոյ շարժումն է, իսկ ուրախութիւնը կրից մէկ տեսակն է, որ իւր բաղձանաց փնտռածը գտնելով անոր վրայ կ'ուրախանայ։

Ա՛յլ է ճշմարիտ սէր, որ բարիէն դատուիլ չ'ուզեր, ա՛յլ է հաճոյք, որ մեծ մասամբ բաղձանաց կը հետեւի, քան թէ ճշմարիտ բարեաց։

Հաճոյքը բնախօսական հոսանաց հետամուտ լինելու աւելի տրամադիր է, եւ իւր սիրածը շարունակ բաղձանաց մէջ կը փնտռէ, քանթէ հոգւոյ խորհուրդներու մէջ, զի բնականի մէջ, հաճոյքը աւելի կ'զգայ։ Հաճոյքը կոյր է, վսեմն եւ ճշմարիտն ու փառաւորն չի տեսներ, այլ միայն իրեն հաճելի երեւցածները կը տեսնէ եւ անոնց կը հետեւի։

Հ. — Հոգեբանական գիտութիւն մարդուն ի՞նչ կ'ուսուցանէ։

Պ. — Արտաքին դիտութիւններէն աւելի օգտակար է մարդուն համար՝ ուսանիլ, այս անտեսանելի, բայց գործողութեանց արդիւնքն մեզ ըմբռնելի ցոյց տուող ինքնաճանաչութեան հոգեբանական գիտութիւն։

Այս գիտութիւն ամէն գիտութեանց հիմն եւ աղբիւրն է, վասնզի ամէն գիտութիւնները մեր մէջէն եւ մեր հոգւոյ խորհուրդներէն կառնուն իրենց ծագումն եւ զարգացումն ։

Այս գիտութիւնն է որ զմեզ կ'որոշէ բնազդեցական կենդանիներէն, եւ զմարդն կատարելագործելով բարոյական էակ կը կացուցանէ ։

Սակայն շատ դժուար է այս գիտութիւն ձեռք բերել եւ ըստ այնմ կենցաղավարուիլ, վասնզի մարդուն բնական բնութեան խորերէն առաջ եկած կիրից եւ բաղձանաց չափազանցութիւնք, շարունակ հակառակութիւն կը յարուցանեն հոգւոյ խորհուրդներու դէմ, եւ զմարդն դէպ ի բնական բնազդեցական կեանք կը մղեն ։ Թէպէտ բնական կեանքն ալ մարդուն համար կարեւոր է, բայց նորա չափազանցութիւն զմարդն կը հեռացնէ բարոյական կեանքէն ։ Այս այն մեծ պատերազմն է որ շարունակ զմարդ ալէկոծութեան մէջ կը պահէ, բնական եւ բարոյական կենցաղավարութեան մէջ ։

Մարդուն հոգւոյ խորհուրդներ, նորա մանկական հասակին մէջ շատ տկար են եւ խակ, ուրեմն այն խակ եւ տկար խորհուրդներուն կրթութիւն եւ լուսաւորութիւն տալ անհրաժեշտ պէտք է, զմարդն իւր բարձր դիրքին բարձրացունելու համար ։

Այն մարդն որ ինքզինք չի ճանաչեր եւ իւր անձի վրայ գիտակցութիւն չունի, մենք ինչպէ՞ս կրնանք համոզուիլ թէ նա ուրիշ բաներ եւ մարդիկ ճանաչելու կարող է. այն մարդն որ ինքզինք չի ճանչեր, միթէ կարելի՞ է յուսալ թէ նա անտեսանելի արարիչն Աստուած կը ճանաչէ ։ Ըսած է վճռախօս մը « ծանիր զքեզ » ։

ՅԱՐՈՒԹԻՒՆ ԽՈՐԷՆ ՏԷՐՏԷՐԵԱՆՑ

## ԲԱՐՈՅԱԿԱՆԻ ՊԱՐՏԱԶԳԱՑՈՒԹԻՒՆ

*Հոգեբանութիւնը մարդոյն առաջին ուսումն է, անկէ վերջ կարգ կուգայ բարոյագիտութեան ուսումն սորվելու ։*

*Բարոյագիտութիւնը, իւր օրէնքներն եւ հրահանգները, հոգւոյ խորհուրդներէն կը քաղէ, թէ կ՚ուսուցանէ եւ թէ ի գործ կը դնէ ու կը հրահանգէ ։*

*Հոգեբանութիւնն եւ բարոյական ուսումն, ամէն մարդու համար պէտք է, բայց այս դժուարիմաց եւ դժուարատանելի գիտութիւնք ուսուցանելն, ուսանելէն աւելի դժուար է ։ Եւ ամէն բանէն աւելի դժուարն այն է, որ այն ուսմունք զորս մենք ուրիշին պիտի հաղորդեմք, արդեօք այն բաները մենք գիտե՞մք, եւ ունի՞մք, կամ թէ, այն բաներու ստոյգն հասկցած եմք, եւ թէ մեր սորուեցուցած առարկաներէն առաջ եկած արդիւնքները մենք կա՞րող եմք մեր անձի վրայ նկարագրելով ի հանդէս բերել ։*

*Մենք՝ մեր աշակերտին՝ մեր մտաց խորհուրդներն են զորս կը հաղորդեմք, նա տրամադի՞ր է ընդունելու եւ ուսանելու՝ թէ ոչ, վարժապետ նա՛խապէս այս բաները գիտնալու պէտք ունի ։*

*Այն աշակերտն որ իւր մէջն եղած ներքին զննութիւնք, հոգւոյ կարողութիւնք, եւ անոնց առաջ բերած արդիւնքներն չի կարողանայ ճանաչել եւ ըմբռնել ու բացատրել, նա տրամադիր չէ ինքնաճանաչութեան շաւղին մէջ մտնել, եւ այս տեսակ աշակերտի հետ ինչ ոճով եւ լեզուաւ խօսիս, միշտ խօսածներդ իրեն համար անհասկնալի եւ անըմբռնելի են, եւ ապարդիւն կը մնան ։*

Իսկ երբ տղայ մը ; սրտով կը փափագի իւր հոգւոյ ամէն կարողութիւնները քննել, հասկնալ, այս բանը մի բարի նշան է, որ ինքզինք ճանաչելու եւ լաւ կառավարուելու յոյս կուտայ, եւ իւր անձի թերութիւնք աստիճանաբար ճանաչելով, իւր հոգւոյ բարեմասնութիւնները ցոյց կուտայ ; եւ անկէ վերջ, շուտով կը յաջողի իւր սխալմունքները սրբագրելով, հեռանալ վնասաբեր եւ անպատիւ վարմունքներէ, եւ տգեղ ունակութիւնք, բարի ունակութեանց կը փոխէ : Նա որ ինքզինք լաւ կը ճանաչէ, նաեւ ուրիշներու սիրտ եւ հոգին ալ ալ կրնայ ճանաչել եւ մոլիներէ զգուշանալ ու հեռանալ : Ուսուցիչը պէտք է որ Աստուծոյ երկիւղածութիւնն եւս ունենայ եւ տպաւորէ ուսանողի եւ սրտի եւ մտաց մէջ, զի Աստուծոյ երկիւղածութիւնն ուսանողի կոչումն կը բարձրացունէ, եւ ուղիղ բարոյականի հետեւելու կ'առաջնորդէ :

Մարդն ինքն է որ կրթութեամբ առաջ կը բերէ, թէ հեռատեսութիւնն՝ եւ թէ շատ մը գիտութեանց միաբանական միացման կապն : Մարդն ինքն է որ, կրնայ պատրաստուիլ զարգանալու եւ կատարելագործուելու, «Դու քեզ օգնէ որ Աստուած ալ քեզ օգնէ», եթէ դու քեզ չ'օգնես, լաւագոյն առիթներն ի գործ չի դնես, վերջէն զանոնք պիտի փնտռես՝ բայց չի պիտի գտնես, վասն զի ժամանակն զանոնք իւր հոսանաց հետ կը տանի այլ եւս չի վերադարձնելու պայմանաւ :

Ժամանակի հոգին չի ճանաչող ծոյլերու համար կեանք չի կայ, զի նոքա կենդանի աշխարհի մէջ, անթաղ մեռեալներ են :

Խոհեմ ուսուցիչն իւր աշակերտին, գիտութիւնն ուսուցանելէն աւելի, ուսանելու ճանապարհները ցոյց կուտայ, առաջ բերելով թէ, աշակերտն ուսանելու եղանակն ձեռք բերելէն վերջ, ինքնին կրնայ ինքնօգ-

նութեամբ եւ կրթութեամբ , ուսմունքներն իւր անձի վրայ պատկերացունել , եթէ տրամադիր է, եւ իւր ֆիզիգական կարողութիւնք եւ թէ մտաւորական կեանք կարողանան համապատասխանել ուսման եւ կրթութեան ։ Ուսմունք եւ կրթութիւն ձեռք բերելու համար պէտք է որ մարդն ունենայ յարատեւ աշխատութիւն եւ հաստատուն կամք ։ Աշխատութիւնը մոգական գաւազան մ՚է , եւ թէ դիւթիչ զօրութիւն ։ Հաստատուն մտաց տէր մարդուն համար , որ անկարելին կարելի կ՚ընէ , հաստատուն կամաց տէր մարդն , ամենադժուար բառը կ՚ընդունի , բայց անկարելի բառին մեծ նշանակութիւն չի տար . անոնք որ հաստատ կամաց եւ յարատեւ աշխատութեանց կը հնազանդին , հոգին թռիչ կուտայ անոնց անկարելին՝ կարելի ընելու ։ Հանճարը յարատեւ աշխատութեան ծնունդն է ։ Աշխատութիւնը փոքր մանկան ոտքերուն զօրութիւն կուտայ , եւ զայն լեռան ստորոտէն անոր գլուխը կը բարձրացունէ ։

Հ. — Բարոյական գիտութիւնն իւր հմտութիւնն ո՞ւրկէ կ՚առնու ։

Պ. — Բարոյական գիտութիւնն իւր հմտութիւնները կը քաղէ մարդոյն հոգւոյ խորհուրդներէն , խղճի օրէնքներէն ալ քաղելով, ցոյց կուտայ մարդուն ճշմարիտ բարեաց եւ առաքինութեանց հետեւելու եւ չարիքներէն հրաժարելու կերպն , որով մարդն կը յաջողի պատուաւոր փառք մը , պատիւ մը եւ երջանիկ կեանք մը ձեռք բերելու ։

Բարոյական գիտութիւնն , առաքինութիւնք եւ մոլութիւնք իրարմէ որոշելով , հրահանգ կուտայ մարդոյն ընելով , առաքինութեանց հետեւող մարդոյն վարձքն պատիւն է , եւ նպատակն՝ երջանկութիւն , իսկ մոլութեանց հետեւող մարդոյն վարձքն պատիժն է , արհամարհանք եւ անպատուութիւն ։

Այս գիտութեան պաշտօնն է հնարաւոր միջոցներով, օրէնքներով, համոզել, կրթել, եւ ուղղութեան բերել՝ մարդոյն բնականի բնութեան հետեւով կիրքերը, փափաքները, իղձերը, եւ զմարդն բնական կեանքէն մինչեւ աստիճան մը հեռացունելով, բարոյական շաւղի մէջ դնել։

Սակայն շատ դժուար է զգալի եւ հեշտալի առարկաներէն մարդոյն տհաս միտք եւ նորա խորհուրդները անջատելով տանիլ բարոյականութեան ընթացքին մէջ դնել։ Մանաւանդ անուս եւ չկրթուած միտք, բնաւ չի յօժարիր այս ծանր լուծին խոնարհիլ, ուրեմն խակ միտքերը կրթել պէտք է, այս կրթութիւնն ալ դժուար է, վասնզի լեռան ստորոտէն նորա գլուխ ելլել է առաքինին համար։

Կրկնել պէտք է թէ առաքինին շատ դժուարութեամբ լեռ կելնէ. բայց մոլին կը նմանի լեռան գլուխ կեցող այն խախուտ քարին, որուն եթէ մի փոքր շարժում տաս, այն քարն ինքնին սահելով, գլորուելով շատ շուտ լեռան ստորոտ կիջնէ, մանաւանդ թէ հրապուրիչ առարկաներն, տեսանելի են, եւ մարդոյն սրտի անխորհուրդ զգացմանց, կրից եւ բաղձանաց համապատասխան պատկերաւ մը կը ներկայանան իրենց հաճելի երեւոյթներով։ Մինչ բացականին հետեւիլ սիրող մարդն, իւր շատ մը բնական հաճոյքներէն ինքզինք չ'պիտի զրկէ, եւ շատ մը նիւթական զոհողութիւնք պիտի ընէ, որ կարողանայ իւր փափաքելի պատուոյն արժանանալ, եւ իւր յուսացած երջանկութիւնն ձեռք բերել։

Մենք կը տեսնեմք թէ նորածին տղայք խորհուրդ ունին որ կարողանան բարին եւ չար, պատիւ եւ անատուութիւն իրարմէ որոշել, եւ բարոյն ու պատուարին հետամուտ լինիլ, հետեւաբար բնազդեցական անքն իրենց հաճելի եւ սիրելի է, եւ անոնց ետեւէն

գնալու տրամադրութիւնը ցոյց կուտան ։ Կրթութիւն միա՛յն կրնայ զանոնք բնական կեանքէն հանելով՝ բարոյականին առաջնորդել ։

Որեւէ բարոյականութեան սուրբ տաճարի մէջ մանել ուզող մարդոյն, մեծ կրթութիւն եւ դաստիարակութիւն պէտք է ։

Մարդ մը բարոյական կրթութեան հետամուտ եղած ժամանակ, պէտք է որ իւր բարոյական նկարագիրն կատարելագործելու փափաքն եւ ջանքն ունենայ, եւ նախապէս իւր ընդունակ եւ տրամադիր լինելու վրայ խորհի, եւ իւր մէջ հաստատուած խիղճը, արթնութեան մէջ պահելու հոգն եւ խնամքը ունենայ ։

Բարոյական կրթութեան կատարելութեան բարձրանալու համար, պէտք եղած ողջմտութիւնը, սրտի ազնուութիւնը, հոգւոյ վեհութիւնը, բարոյական բարին, եւ առաքինութեանց ամէն տեսակ ձիրքերը, նկարներն իւր անձի վրայ պատկերացունէ՝ ուսման ջանիւք, գործնական աշխատութեամբ, բարի անձանց պատուաբեր առաքինական գործոց հետեւողութեամբ ։

Աշակերտը իւր գլուխը խոնարհեցունելու է կըրթութեան ծանր լուծին տակ, որ կարողանայ ինքզինք բարձրացունել բարոյականի կատարելութեան ։ Կրթութիւնն է որ զբնական մարդն կոփելով, տաշելով, իբրեւ բարոյական մարդ, ի հանդէս կը բերէ ։ Ուսուցիչն է որ իմացականի, բարոյականի սկզբունքները կը զետեղէ ուսանողի թարմ սրտի եւ հոգւոյ մէջ, զի աշակերտն ինքնին չի գիտեր թէ ի՞նչ է իմացականը, բարոյականն ու անոնց առաջ բերած բարի եւ պատուաբեր արդիւնքները ։

Ուսուցչի պաշտօնն է բնական մարդը, բնականի բնութեան վիճակէն կրթելով հեռացունել, եւ նորա սրտի եւ հոգւոյ խորհուրդներու մէջ բարի հունտերը

սերմանել, եւ սրտին ու խորհուրդներու մէջէն ապականարար մոլութիւնները հեռացունել ։

Ուսուցչի պաշտօնն է չօշափել ուսանողի մարմնոյ կազմական վիճակը եւ կարողութիւնքն, մտաց իմացականի ընդունելութիւնն, բարոյական ուսման ընդունակ լինելուն կամ չի լինելուն յարմարութիւնը, նորա առանձին բնութեան յատկութիւնները, սրտի եւ բաղձանաց միտումները, իմանայ թէ, ինչ ուսման եւ արհեստի տրամադիր է, եւ թէ ինչ ուսման եւ արհեստի փափաք ցոյց կուտայ. որպէս զի ըստ այնմ հրահանգէ ուսանողի նպատակին համապատասխանն ։ Երբ ուսանող բնականէն բարի է, կրթութիւնը զայն շուտով կը կատարելագործէ, անոնք որ ի բնէ տրամադիր են, անոնցմէ շատերը, ինքնօգնութեամբ կատարելագործած են իրենք զիրենք ։ Տղայի մը սրտին ազդող մեծ կրթութիւնը, իւր բարեսէր մօր ներշնչումն է, որ մօր գորովագութ սրտէն կը բղխի. հոգ չէ թէ մայրը առանց ուսման լինի, նա միշտ իւր զաւկի բարեկրթութիւնն եւ բարեկեցութիւնը կը փափաքի, միակ թէ բնութեամբ ախտաւոր չի լինին, թէ մայր եւ թէ տղան ։

Ուսուցիչը պէտք է որ բանականի բնութենէն քաղելով ցոյց տայ աշակերտին, բարոյական բնութեան դէմ հակառակողը, վնասաբեր տգեղ զգայումները, անասնական կենաց համեմատ բնականի յօռի կրից եւ բաղձանաց անհաճոյ եւ վնասակար գործերը, նաեւ իբրեւ օրինակ առաջ բերէ, բարի, բարոյական եւ համեստ կենցաղավարութիւն մը ունեցող պատուաբեր գործոց բարի օրինակները, եւ ուսուցանէ որ տղան միշտ ջանայ բարւոյն կողմն երթայ, եւ չարերէն հրաժարի, եւ իւր տեսակցութիւն աւելի պատուաւոր մարդկանց հետ լինի, եւ վնասակար ու ախտամոլներէն զգուշանայ եւ հեռի մնայ ։

*Ուսուցիչը, գիտնալու է թէ, ա՛յլ է սրտի եւ կամաց կրթութիւնն, ա՛յլ է մտաց կրթութիւնն, որ մարդոյն ճշմարիտ նկարագիրն է, զի մտաց կրթութիւնը, մեծ մասամբ, ուսանողի մտաց լուսաւորութիւն տալ է. սակայն զօրաւոր միտքը, երկսայրի սուր է, եթէ ուղիղ նկարագրի առաջնորդուի, շատ բարի է եւ պտուաբեր, իսկ եթէ կամաց եւ սրտի բնական իղձերուն հետեւի, վնասաբեր կը դառնայ. այս պատճառաւ, ամէն բանէն աւելի՝ մտաց իմացականի մշակութիւնը պէտք է որ ուղղութեան մէջ մնայ, զի սրտի եւ կամաց ազնուացումը, մտաց բարի խորհուրդներէն առաջ կուգան։*

*Մենք շատ անգամ զօրաւոր մտքի տէր անձինք կը տեսնեմք, բայց գտնեմք թէ չեմք սիրեր եւ թէ չեմք պատուեր կամ յարգեր, եւ անոնցմէ հեռի մնալ կ՚ուզեմք, եւ սոյն պատճառն այն է որ, մենք գտնեմք լաւ նկարագրի տէր չեմք տեսներ. այն տեսակ անձանց կարելի է որ միտքը առողջ լինի, կամքերնին, սրտերնին ապականեալ է։*

*Մարդոյն ճշմարիտ արժանապատուութիւնը գիտութեան վրայ հիմնուած չէ, այլ անոր բարի եւ վայելուչ կենցաղավարութեան եւ հոգւոյ ու սրտի ազնուութեան վրայ, եւ բարի կրթութեան վրայ հաստատուած է։ Աշխատութիւնը գիտութեան լուսատու լապտերն է. աշխատութիւնը մինակ ուսանելու համար չէ, այլ արհեստները ձեռք բերելու համար ալ աշխատութիւնն հարկաւոր է։*

*Շատ աշխատելով մեռնողներու թիւը քիչ է, բայց ծոյլ չաշխատողներէն շատերը կը մեռնին, զի անաշխատ կեանքը ապականարար ցեց է, որ մարդուն մարմինը եւ հոգին ի միասին կ՚ապականէ եւ մարդն իւր նիւթական կարողութիւններէն զրկելով կ՚աղքատացունէ։*

Անաշխատ կեանքն եւ ծուլութիւնը լերան գլուխ նստող հսկայ մարդիկը անօթի մնալու կը դատապարտէ, եւ յուսահատութեան մէջէն նոքա երբ շարժումն ընել կուզեն, ըստ որում անոնց շարժելու կարողութիւնը սպառած է, անկարողութիւնը զիրենք թաւալգլոր լերան ստորոտն իջեցունելով կը մահացունէ։

Շատ աշխատողները, թէ բնապէս եւ թէ բարոյապէս սքանչելի տաղանդաւոր մարդիկ կը լինին։ Գործնական օրինակները մեզ ցոյց կուտան անբաւ հարըստութեան տէր շատ մը մարդոց չաշխատող զաւակները, որք մուրացկանութեան ստորին աստիճանի մէջ գտած են իրենք զիրենք։ Ասոնց հակառակը, խոնարհ եւ աղքատիկ վիճակէն առաջ եկող շատ մը տղաքներն ալ, իրենց քրտնաթոր աշխատութեամբ, անբաւ հարըստութեան տէր եղած են, եւ մարդկութեան շարքի մէջ մեծամեծ պատիւներու եւ բարձր աստիճաններու բարձրացած են, եւ ժողովուրդները կառավարելու մենտորները եղած են։ Իմաստասէր մը ըսած է. «Աշխատութիւնը, աշխարհի տգեղութիւնը գեղեցկութեան, եւ անէծքն ալ օրհնութեան կը փոխէ»։

Հարուստները միշտ կ՚օգնեն աշխատասէրին, բայց ծոյլերէն երես կը դարձունեն, որ չտեսնեն եւ ձեռընտուութիւն չընեն։ Հարստութիւն ծնողը աշխատութիւնն է, աղքատութիւն ծնողն ալ ծուլութիւնն է։

Ժամանակն ամենէն աւելի թանկագին է, բայց ժամավաճառութիւնն ալ ամենանուաստ վաճառականութիւն է, վասնզի ծախողն ալ կը սնանկանայ, առնողն ալ։ Ծոյլերուն համար ամէն բան դժուարին է, իսկ աշխատողի համար ամէն բան դիւրին է։

Ծոյլ մարդը շատ կամաց կը քալէ, եւ ասոր հակառակն, աղքատութիւնն ալ անոր ետեւէն վազելով լայն կը բռնէ եւ կը նեղէ ու կը չարչարէ. աղքա-

տութիւնը ծոյլի տունէն դուրս ելլել չ'ուզեր, միշտ հոն մնալ կուզէ. անոր համար որ աշխատասէրի դռնէն ներս մտնելու միջոց մը չունի: Մարդոյն համար աշխատութիւն պէտք է, այն որ չ'աշխատիր, կամ գող է, կամ մուրացկան, երկուքն ալ ստրկութեան եւ անպատուութեան պատկերը կը կրեն:

Այն որ չուզեր գործել, չի կրնար ուտել, մարդկանց մեծ մասը աշխատութեամբ մեծ մարդ եղած են: Մեծ մարդ են անոնք, որք իրենց սիրտը, միտքը եւ կամքը միաբանութեամբ աշխատութեան նուիրած են: Աշխատասէր արհեստաւորը կրնայ ուսման համար եւս ժամանակ ունենալ, բայց անաշխատ ծոյլը, բնաւ ժամանակ չի գտներ, զի իւր բովանդակ ժամանակը պարապ մնալու ծախսած է, վերջի ջանքը անօգուտ է: Ցանելու համար աշխատութիւն պէտք է, չը վատնելու համար, խնայողութիւն. չ'խնայողի տուն կը նմանի այն ջուրով լեցուն մեծ լճին, որ չխնայող կարճատեսը, կը կարծէ թէ չի սպառիր ջուրը. բայց երբ լիճը իւր վերի կողմէն ջուր չ'առներ, եւ վարի կողմէն շարունակ կուտայ, հետեւանք կը լինի ջուրի սպառումը:

Եկամուտէդ շատ աւելի ծախք մի՛ ըներ, մաքէդ մի հեռացըներ այն դժբաղդութիւնք, որք մեր աչքէն անտեսանելի են, չեն տեսնուիր: Աշխատասէրը կ'սէ. «Այս աւուր գործը վաղուան մի թողուր». իսկ ծոյլը կ'սէ. «Վաղը թող ըլլայ, միւս օրուան թող մնայ, ի՞նչ վնաս ունի»: Այս է յաջողութեան եւ անյաջողութեան վնասու եւ շահու երկու դասերը:

Եթէ վաճառական ես, ճշդապահութիւնն եւ հաւատարմութիւնն յարգէ. մանաւանդ առեւտուրի մէջ, զի այս երկու բանը մեծ դրամագլուխ են առեւտուրի մէջ, եւ վստահութեան մեծ արժանիք կը վայելեն. ասոր հակառակ վարուողները խաբեբաներու անպատուու-

թեանց մէջ կը գտնեն իրենք զիրենք ։ Երբ իրենք անհաւատարիմ են, ի՞նչպէս կարելի է որ ուրիշները իրենց հաւատք ընծայեն եւ վստահութիւն ունենան անոնց վրայ։

Ում հետ որ կը խօսիս, մի՛ իմաստակեր, այլ իմաստասիրէ եւ գործերուդ հիմը բաղձանացդ իղձերուդ եւ երեւակայութեանդ վրայ մի՛ դներ, այլ ուղիղ խորհուրդներուդ վրայ հաստատէ. ամէն գործերուդ մէջ, հետեւիր խղճիդ ազդման, բարոյական առաքինութեան, եւ Աստուծոյ երկիւղածութիւնը մտքէդ մի՛ հեռացըներ ։ Լաւ իմացիր թէ առանց ժուժկալութեան առողջութիւն չկայ, առանց առաքինութեան պատիւ չկայ եւ առանց կրօնի երջանկութիւն չկայ ։ Միշտ հետեւիր բանական խորհուրդներուդ, խղճիդ ազդման, կրօնական զգացման, զի կայ էակ մը որ զքեզ կը տեսնէ, եւ անոր ձեռքը արդարութեան կշիռ մը կայ որ քու գործերդ կը կշռէ, որուն վախճանն է կամ վարձք կամ պատիժ ։

Եթէ մարդիկներէն մէկը քու վրայօքդ զէշ խօսի, անոր մի՛ հակառակիր, այլ այնպիսի մի ուղիղ կեանք վարէ, որ տեսնողները չի հաւատան անոր ըսածներուն, յայնժամ դու կ՚արդարանաս, նա ստախօս՝ կը լինի, եւ ստախօսութեան մակդիրէն մեծ արհամարհական պատիժ չի կայ ։ Եթէ ձեռքդ օգտակար գործի մը չե՛ս կըրնար գործածել, ժամանակդ մտքիդ մշակութեան տուր, ընկերութեան մէջ քիչ խօստում ըրէ, բայց խօստացածըդ չուտով կատարէ ։ Այն չահը որ տեւական է հոգ չէ որ քիչ լինի, զի անիկայ խելահաս մարդոյն գոհունակութիւն եւ խաղաղութիւն կը պարգեւէ. Նախ չահէ յետոյ ծախսէ, չահով պարտք առնելու հետամուտ մի՛ ներ, զի անիկայ յղի օձ մ՚է, որ հազարաւոր թունաւորիչ ձագեր կը ծնի, եւ զքեզ ու տունդ իմիջասին թու-ւորելով կ՚ոչնչացնէ ։ Երիտասարդութեանդ ժամա-կ խնայէ որ ծերութեանդ ժամանակ հանգիստ ապ-

րես ։ Ուրիշի վրայ գէշ մի՛ խօսիր . նայէ որ դու անմեղ լինիս, զի անիկայ է կատարելութեան պայմանը ։

Համբաւոյ հետամուտ մի լինիր, զի համբաւոյն վիճակը միշտ փոփոխութեան մէջ է, եւ ստուերի կը նմանի, երբեմն մարդոյն առաջէն կը փախի, որ չի բռնուի, երբեմն ալ ետեւէն կը վազէ, կարծես թէ քեզ մօտենալ կ'ուզէ, բայց երբ երեսդ անոր դարձունելով զայն բռնել ուզես, կրկին քեզմէ վազելով կը հեռանայ, մերթ կ'երկարի մերթ կը կարճնայ, երբեմն ալ բոլորովին անյայտ կը լինի ։ Համբաւը հասարակաց կարծեաց յարափոփոխ դրուցաբանութեանց վրայ հիմնուած է, այսօր կայ, վաղը չի կայ, այսօր կը սիրէ վաղը կ'ատէ, այսօր կը համբուրէ վաղը կը խածնէ, միեւնոյն բոպէին, չրթամբը կը համբուրէ, ատամներով կը խածատէ ։

Սիրէ առաքինութիւնն, որ մարդոյն ներքին բարիքն է, եւ աշխարհի բովանդակ հարստութիւնն ոչ ինչ է առաքինութեան առջեւ, վասնզի ամէն բան փոփոխական է եւ ապականացու, սակայն առաքինութիւնը, թէ անփոփոխ է եւ թէ անապական, զի անիկայ մարդոյն հոգւոյ զարդն է, զոր մէկը չի կրնար կողոպտել ։

Զգուշացիր այն միջոցներէն, որք զքեզ կը խոտորեցունեն առաքինութեան ուղիղ ճանապարհէն . եւ ատոնք են, հարստանալու սէրն, հագուստի սէրը, զուարճութեան սէրն, հաց ձեռք բերելու սէրը, փառաց եւ մեծութեան հասնելու սէրն, հաճոյական սէրն . այս անտեւական եւ փոփոխական սէրը, մարդիկներէն ոմանք կը քաջալերեն, ոմանք ալ կը հարկադրեն, զի փառք եւ հաճոյք կը քաջալերեն, իսկ աղքատութիւնը կը հարկադրէ, ուրեմն զգուշացիր, ուղղամտութեան սկզբունքին հակառակ մի՛ վարուիր, ամէն փնտռածներդ աշխատութեանդ մէջն է ։ Եթէ աշխատիս անօթի չես մեռնիր ։

Խղճի օրէնք մը կայ, խիղճը իւր անգիր օրինօքը, իւր զօրութենական գիտութեան լոյսը, մարդոյն սրտէ ի սիրտ ազդուապէս կը ցոլացունէ, եւ մեզմէ անբաժանելի ընկերակիցն է, կ'ուրախանայ մեր բարեգործութեանց վրայ, իբրեւ մեր ճշմարիտ բարեկամն եւ բարերարը, կը տրտմի, կուլայ, մեր մոլի գործերու վրայ, նա մեզ միշտ ցոյց կուտայ բարիները եւ կը հրահանգէ հեռի մնալ չարերէն։

Իմաստասէր մը ըսած է, «Մարդոյն մէջ բնակող խիղճը, Աստուծոյ ձայնն է. անոր ձայնը, մեր մէջէն մեզ հետ լռելեայն կը խօսի եւ ցոյց կուտայ, ըրէ, եւ մի՛ ըներ պատուէրները եւ հրահանգներն։ Ուրեմն հետեւէ խղճի ձայնին եւ կրօնական զգացման։

Կրօնքն, որ հաւատոյ վրայ հիմնեալ, սրտի բարի զգացում մ'է, նա մարդոյն կուտայ այն արժանապատուութեան ամենաբարձր խոստումը, որ աշխարհի ամէն բարիքներէն եւ երջանկութիւններէն գերիվերոյ է, կ'ըսէ կրօնքն, «Աշխարհի տուած բարիքը, կրկին այս աշխարհի վրայ կը մնայ։ Մարդոյն համար պատրաստուած բարիք մը կայ երկնից մէջ, որ անմահ է եւ յաւիտենական, եւ այս բարիքն անոնց է՝ որք կը հաւատան եւ բարիք կը գործեն»։

Կրօնքը կ'ըսէ, «Մարդոյն նախնական վիճակը կատարելութիւն էր, բայց իւր բարոյական անկմամբ, իւր բնութենէն ծագում առնող բնական կիրքերն եւ բաղձանքները զօրանալով եւ ազդեցութիւնն ի գործ դնելով մարդոյն հոգեկան կարողութեանց վրայ, զայն կատարելութեան վիճակէն հանելով բնական անկատար վիճակի մէջ դրին»։ Մարդն թէ բնականի բնութիւն, եւ թէ բարոյական բնութիւն իւր մէջ ծածկուած կը կրէ, որ հետզհետէ կրթութեամբ կը կատարելագործուին։

Արդ, մարդն այժմ կ'աշխատի որ իւր ներկայ ան-

կատար վիճակէն ինքզինք կրթելով, ազնուացունելով եւ կատարելագործելով իր նախնական կատարելութեան վիճակին բարձրացունէ ։

Մարդն պիտի կարողանայ անկատարելութենէն կատարելութեան բարձրանալ, երբ իր անկախ ազատ կամքով կարողանայ իր բնական կրից եւ բաղձանաց չափազանցութեանց վրայ տիրապետել, եւ իր մտաւորական ու բարոյական վիճակը կանոնաւորելով, իր անկատար գործերը յեղաշրջելով, անկատարն կատարելութեան վերածել ։

Մարդկութեան մէջէն անոնք, որք իրենց բնական գործերը բանականի եւ բարոյականի չեն վերածեր, նոցա բաժինն կը մնայ անկատարելութեան մէջ ։ Կրօնի ցոյց տուած ճանապարհի մէջ այս է մարդոյն կատարելութեան եւ անկատարելութեան վիճակը ։

Իմաստասիրութիւնը կ'ըսէ, «Մարդոյն կատարելութիւնը անսահման է, մարդն միայն առաքինութեան երջանկութեան եւ ճշմարտութեան մէջ կրնայ յառաջ դիմել, իր սահմանաւոր շրջանի մէջ ։

Աստուած միայն է կատարեալ. մարդոյն հոգւոյ խորհուրդներ եւ բարոյականութիւն կը թելադրեն զմարդն ըսել եւ ընդունել թէ՝ կատարելութիւն անկատարելութենէն առաջ է. եւ թէ չընդունի թէ անհուն կատարելութիւն մը կայ, կատարելութիւնը, իրեն համար անծանօթ կը մնայ եւ անըմբռնելի ։ Ստոյգ է թէ մարդոյն մտաց խորհուրդներու սահմանաւոր լինելը զմարդն անկարող կ'ընէ անսահման բացարձակ էակի ամենակատարելութիւնն կատարելապէս ճանաչել, զի անտեսանելի եւ անմերձենալի ու անշօշափելի է ։

Մարդոյն ստեղծական սահմանաւոր մտաց խորհուրդները կարող չեն անսահմանին Աստուծոյ խորհուրդներու գաղտնեաց հասու լինել, բայց սրտով կըմբռնէ եւ կը

հաւատայ թէ ամենակատարեալ էակ մը կայ, մարդն իւր հոգւոյ խորհուրդներով եւ սրտի բարի զգացմամբ անոր կը դիմէ եւ զայն թէ կը սիրէ եւ թէ կը պաշտէ, բայց միշտ յետամնուտ է զայն ըմբռնելու։

Այս սկզբունքն է որ կը ծնանի ի մարդն անհանգըստութիւն, փափաք, կարօտութիւն, որք շարունակ կ'աճին եւ առաջ կ'երթան, եւ բնաւ չեն յագենար։ Ասիկայ կրօնի անյաղթելի սկզբունքն է, որ չի զիջանիր, շարունակ զմարդն կը բարձրացունէ Աստուծոյ սիրոյն շուրջ շրջան կատարել, ինչպէս որ թիթեռնակն իւր սիրելի եւ փափաքելի բոցոյն շուրջ կը դառնայ, առանց իւր թեւերու այրելէն կասկածելու։ Իմաստասէր մը կ'ըսէ «Բոլոր երկրաւոր եւ անցաւոր ուրախութեանց վրայ մշտնջենապէս ապրող կրօնի զգացումը եւ ազդեցութիւնն է. կրօնքը մարդկային հորիզոնի վրայ ծագած երկնային պայծառ լուսին մ'է, որու վրայ մարդն ապահով է թէ ուրիշ ժամանակի մը մէջ առաւօտեան լուսափայլ լուսի մը պիտի դառնայ, եւ այն լուսինէն ցոլացեալ ճառագայթները, մահուան շուքի տակ՝ մթութեամբ պաշարեալները պիտի լուսաւորէ, նոր եւ տեւական փառաւոր կեանքի մը մէջ»։

Յիսուս կ'ըսէ. «Աստուած հոգի է, եւ անոր երկրպագուներ պէտք է որ հոգւով եւ ճշմարտութեամբ անոր երկրպագութիւն ընեն»։ Աւետարանի ձեռք երկու բան կայ. մինն է մեղաց սոսկումն, միւսն անսահման ներողութիւն։ Յիսուսի Աւետարանը հաւատք, բարեգործութիւն, սէր առ Աստուած եւ առ ընկերս կը պահանջէ։

Կ'ըսէ հաւատք «Այս աշխարհի ցաւեր, այս աշխարհի հետ կը վերջանայ. ամէն ցաւոց բժիշկն երկնքէն ջած կրօնքն է, եւ կ'ըսէ ցաւագարին, ես միայն համբերութեամբդ եւ հաւատոյդ յոյսերով կրնամ զքեզ

*մխիթարել, դու երկնից կենաց մէջ կրնաս քոյ ամէն ցաւերէտ ազատիլ, զի այս աշխարհ տուն անիծից, ցաւոց եւ տանջանաց է, երկնից մէջ հանգստութիւն եւ փառք կայ»: Ուրեմն հաւատա, յուսա՛, եւ համբերէ, մի դադրիր Աստուծոյ ապաւինելէ եւ բարեգործելէ, զի մարդոյ յաւիտենական տունն երկինքն է, որ երանելիներու կայանքն է:*

ՅՈՎՀԱՆՆԷՍ Յ. ՄԻՀԹԷՐԵԱՆ

*Հ. — Ի՞նչ է իմաստասիրի գիտութեան առարկան:*

*Պ. — Իմաստասիրի գիտութեան առարկան ճշմարտութիւնն է, ուր կը լինի թող լինի, ուրկէ կուգայ թող գայ. բաւ է որ ճշմարիտ լինի:*

*Այս գիտութիւնը մարդոյն մտաց խորհուրդներուն կը հետեւի եւ իւր սկզբունքները տրամաբանական ձեռնարկութեանց վրայ կը հիմնէ: Եւ ամէն գիտութեանց մէջ իւր իմաստասիրութեան լոյսը կը փայլեցունէ:*

*Այս գիտութիւնը զգերբնականն չի մերժեր. բայց կարգ մը խնդիրներ կան, որք գերբնական չեն, այլ բնագիտութեան օրէնքէն, սկզբունքներէն կ'առնեն իրենց լուծումը եւ բացատրութիւնը. անոնք իբրեւ գերբնական չ'ընդունիր:*

*Այս գիտութեան առարկաներն են նաեւ շարժումը, զօրութիւնը, նիւթը, կեանքը, ժամանակը, միջոցը. կը քննէ տիեզերական մարմինները, անոնց իրարու հետ ունեցած հաղորդակցութիւնք եւ յարաբերութիւնները. իբրեւ հոգեբան, հոգւոյ կարողութեանց մէջ եւս մտնելով, քննութիւնը եւ զննութիւնները կը կատարէ. կը քննէ սկզբունքները, պատճառները, անոնց հետեւանք եղող արդիւնքները եւ կ'ըսէ. հոգին մարդոյն կենսական սկզբունքն է, իսկ միտքը մարդոյն իմացական կարողութիւնն է. եւ կ'ըսէ ամէն սկզբնաւորեալ առար-*

կաները եւ մարմինները, օրինաց նոյնութեամբ զիրենք սկզբնաւորող անտեսանելոյն պիտի վերադառնան ։

Միայն կարգ մը հաւատալեաց վերաբերեալ խնդիրներ կան, որոց բացատրութեան չի մօտենար եւ կ'ըսէ, այդ հաւատոյ բաժինն է. եւ կը լռէ այս մասին ։

Փիլիսոփայն աւելի բնութեան մէջ եղածն կը քննէ, կիմաստասիրէ. Նա նոր բան մը չի ստեղծեր, մինակ բնութեան տուածները տարբեր ձեւերու եւ կերպերու կը վերածէ. տկարամտի եւ փիլիսոփայի գիտցածները միեւնոյն բաներն են ։

Նա իւր աչակերտականին սորվեցուցած միջոցին կ'ըսէ, քու մէջդ նայէ, սորվել ուզածդ մէջդ կը գտնես, ես միայն քու մէջդ եղածները կը ճշդեմ, կ'որոշեմ, կը զանազանեմ եւ անոնց իրարու հետ ունեցած յարաբերութիւնները քեզ ցոյց կուտամ ։

Փիլիսոփայ իմաստասիրի բուն նպատակն ճշմարտութիւն փնտռել, գտնելն է ։ Նա իրաց եւ առարկայից փոփոխութեանց հետ, իւր գիտութիւնն ալ կը փոխէ, վասնզի եթէ իւր գիտութիւնը չի փոխէ, սուտն ճշմարտի հետ կը փոխուի ։

Բարոյականի մէջ իմաստութիւնը գիտութենէն նախապատիւ է, զի բարոյականի մէջ ուղղութիւն ներմուծելու համար, ոչ թէ բնական գիտութիւնը, այլ իմաստութիւնն է որ մարդոց կրից եւ բաղձանաց չափ դնելով կը խոնարհեցունէ հոգւոյ խորհուրդներուն բարձր նպատակի մը համար ։

Ստոյգ է թէ հոգին էութիւն է, բայց իմաստութիւնը հոգւոյն պատահումն է, սակայն իմաստութիւնը հոգիէն գերազանց է ։

Եւ այն հոգին որ իւր մէջ իմաստութիւն չի կրեր, այն հոգին լոյս չունեցող արեգակ կը համարուի կամ թէ դրախտ մը, որ իւր մէջ երանելիները չունի ։

Իմաստութիւնն է որ կը սահմանէ, կը քննէ, կ'որոշէ կը դատէ, կ'ուղղէ վէճերը եւ անհամաձայն կարծիքները համաձայնութեան բերելով կը կարգադրէ եւ կը խաղաղեցունէ ։

Իմաստութիւնը իւր հեռատես լոյսը ամէն գիտութեանց եւ արհեստից մէջ կը փայլեցունէ ։

Իմաստութիւնը, հոգեբանութեան մէջ մեծ պաշտօն մը կը կատարէ, մտաց խորհուրդներուն լոյս կուտայ, եւ կը զօրացունէ հիւանդ միտքերը, կը զօրացունէ եւ կը բժշկէ եւ անոնց ցոյց կուտայ ստոյգն եւ ճշմարիտն ։

Աշխարհ կառավարող իշխանք եւ դատաւորք իմաստութեան լոյսէն առաջնորդուելով ուղղապէս կը դատեն եւ կը կառավարեն ։ Խոհեմ մարդն իմաստունէն կ'առաջնորդուի . իմաստութիւնն, իւր նուրբ տեսութեամբն կը որոշէ . աննիւթն, նիւթականէն, անզգալին զգալականէն, գոյացութիւնը պատահումէն . տեսակն իւր անհատէն, սեռը իւր տեսակէն, իրարու հետ խառնուած սեռերը սկզբնական օրէնքներու վերածելով անոնց մասունքները կը լուսաբանէ ։ Եւ կ'սկսի որոշել անմահ հոգին մահկանացու մարմինէն . եւ իմանալ կուզէ թէ, արդեօք հոգին հիւլէից կուտակութիւն մի է, եւ անկէ առաջ եկած է թէ ուրիշ սկզբնապատճառէ մը ։ Հոգին ջո՞ւր է, օ՞դ է, հո՞ւր է, թէ արարածոց Արարչի ստեղծագործութենէն առաջ եկած էյութենական զօրութիւն մի է ։ Եւ իմանալ կ'ուզէ թէ հոգին ի՞նչպէս կզգայ, կիմանայ եւ կը խորհի ու կը գործէ, կուզէ գիտնալ թէ անմահ հոգին իւր նիւթական մարմինէն բաժանուած ժամանակ, ո՞ւր կ'երթայ եւ ի՞նչ վիճակի մէջ կը մնայ, նաեւ քննելով հաստ կը լինի թէ այս տիեզերական մեծ շէնքին շինուածապետ մը կա՛յ 'ի հարկէ, որ ամենակարող է եւ ամենիմաստ, որ կարող եղած է տիեզերք հոգեւորել, իմանալ եւ կառավարել ։

Իմաստութիւնը զնիւթ եւ զբնութիւն զննելով կը հետեւցունէ ըսել թէ, առանց ամենուն վախճանը կ'երթայ յաւիտենականին Աստուծոյ բարձր կամաց վրայ կը հանգչի ։

Վերոյիշեալները խորհիլ, քննել, գիտնալ, հասկնալ եւ հասկցունելն է իմաստասէրի պարտք եւ կոչումը ։

Իմաստասէր, իւր մարմնոյ աչքէն ի զատ, մտաց լուսաւորեալ պայծառ խորհուրդներու աչքին եւս պէտք ունի. նա նախապէս իրմէն մի քանի թանկագին բաներ եւս պիտի կորսնցունէ, այն է, քաղցր քունը, մտաց եւ մարմնոյ հանգստութիւնը եւ պիտի ունենայ յարատեւ աշխատութիւն. սրտի նեղութիւնը պիտի կորսնցունէ իւր առողջութիւնը, եւ պէտք է որ ունենայ հաստատ միտք, մաքուր կեանք, անաչառ քննադատութիւն, նուրբ խորհուրդները եւ ուղիղ դատումն ։

## ԲԱՆԻ ԳԻՏՈՒԹԻՒՆ

Այս գիտութիւնը, մարդուն համար, ճշմարտութեան գործարան, իմացականութեան լուսատու լապտերն է ։

Բանն է որ իմացականութիւնը խորհրդոց հետ կը միացունէ եւ կը հաստատէ, եւ ներդաշնակութեան մէջ կը դնէ ։

Բանը բնութենէն իմացականութեան մէջ ներմուծուած անհամաձայնութիւնք կը բառնայ, նախնական ճշմարտութիւնք յառաջ բերելով ։

Բանը խորհրդոյ եւ լեզուի պայմանն է. նա է որ ւր սկզբանց գաղափարաց միջոցաւ, իբրեւ մտաց օրէնք, ՚առաջնորդէ իմացականի գործողութեանց ուղղութեան ՚ետեւելու ։

Ուսանողներու համար, կրկնել պատուէրները, խրատները, յորդորները, չ'են կրնար այն արդիւնքն առաջ բերել, ինչ որ զօրաւոր կերպով առաջ կը բերեն բանականութեան խորհուրդները։ Զի բանականի խորհուրդներն են որ, մարդոյն միւս կենդանիներէն աւելի մեծ նախապատուութիւնը կուտան։ Ուրեմն ուսուցանելու մէջ, ամէն բանէն աւելի, ուսանողի բանականութեան խորհուրդները կրկնելու է, որ կարողանայ ամէն բանը խորհելով, տրամաբանելով ըմբռնել եւ անմոռանալի պահել։

Երբ ուսանողը իւր ուսանելի առարկան ճանաչէ, գիտնայ եւ բանականութեան խորհուրդներուն համաձայն գտնէ, սիրով եւ յօժարութեամբ կը փարի անոր եւ առաջ կը տանի։ Մարդը բնական օրէնքներուն չուզելով, ակամայ եւ առ երկիւղի կը հնազանդի, իսկ ազատ օրէնքները, զորս ուսանողը կը տեսնէ եւ բանաւոր կը դատէ եւ իւր հաճոյից եւ շահուն համապատասխան կը գտնէ, այն օրէնքները յօժարութեամբ եւ սիրով կը գործադրէ։

Հ. — Հունաւո՞րն է նախ թէ անհունն։

Պ. — Անհունութիւնը նախ է, եւ հունաւորն անհունէն առած է իւր ծագումը։ Հարկ է, հունաւորն հասկնալու համար, նախ անհունն ճանաչել եւ ըմբռնել. սակայն ոմանք, հունաւորները աստիճանաբար քննելով անհունին կը բարձրանան. ոմանք ալ անհունէն սկսելով հունաւորաց կը խոնարհին. ոմանք ալ անհունը չեն գիտեր. նիւթէն կ'ելլեն, նիւթին կը վերադառնան։

Ստոյգ է թէ անհունը անտեսանելի, անըմբռնելի է, բայց նորա կարողութիւնը, զօրութիւնը, իմաստութիւնը, ինքնին կը փայլի մեր գիտութեանց արհեստներու բարոյականի եւ կրօնական դաստակարգութեանց մէջ։

Ամէն բան իւր պատճառն ունի, ըսել, ճշմարտութիւն մը կայ լինելոյն հաստատութիւնն է ։

Ամէն բանի հաւաքումը կ'երթայ բացարձակի վերայ կը հանգչի, որ անսահման է, ամենակատարեալ է, վասնզի իւր էութիւնը ուրիշէն առած չէ․ ինքը յինքենէ է, եւ ուրիշին կարօտ չէ ։ Մարդն անկարող կը մնայ բացարձակին հասու լինել եւ ճանաչել, վասնզի նա թէ անհուն է եւ թէ անտեսանելի, եւ կարելի չէ որ հունաւոր միտքը կամ խորհուրդը կարող լինի զանհունն իւր հունաւոր մտաց առարկայ ընել, եւ զայն իւր մտաց մէջը ամփոփել ։ Կրօնի նպատակ մարդն զբացարձակն հաւատով եւ սրտի սիրով ու զգացմամբ միայն կրնայ ըմբռնել, եւ նորա գործերէն հետեւցունելով, ըսել թէ այս տիեզերքը անհուն բացարձակ էակի գործերն են, հունաւոր միտք կամ պատահումը չի կրնար տիեզերք կազմակերպել, կառավարել, եւ խնամել, ամէն բաները անհունի իմաստութեան եւ կամեցողութեան թելէն կախեալ կը շարժեն ։

Հաւատացեալ մարդն կ'ըսէ․

Աստուած յաւիտենական է․ բայց նորա սահմանը եւ կարգադրութիւնք յաւիտենական չեն, այլ սահմանաւոր են, զի․ նոցա տեւականութիւնը Աստուծոյ բացարձակ կամեցողութենէն կախեալ է․ բնական մարդ իրաւունք չունի առ ոչինչ համարել բացարձակի հոգոյն այն ազդումները եւ զգացումները, որք յԱստուծոյ առ մարդն մօտաւորութիւն ցոյց տալով, մարդոյն հոգւոյ խորհուրդներուն եւ սրտի զգացմանց կ'ազդէ ըմբռնել, եւ իւր գոյութեան սկզբնապատճառն ճանաչել ։

Եւ այս տեսակ ցոլացումները ստէպ տեսնուած է մարդկանց հոգիէ առ հոգի, սրտէ 'ի սիրտ ։

Այս Աստուածային հոգւոյ ցոլացումն է որ կ'ամրապնդէ զմարդն, իւր սրտով եւ ջերմ հաւատով ըմբռ-

նել անհունն բացարձակի էութիւնը · զի բացարձակն, 'ի սկզբանէ մարդոյն հոգւոյ խորհուրդներու եւ սրտի սիրոյ մէջ ծածուկ գաղփռ մը եւ յայտնի մեծութիւն մը զետեղած է, որոցմէ մարդն թելադրեալ՝ չարունակ բարձրանալ կ'ուզէ, հաւատով եւ բարեգործութեամբ, առ իւր սկզբնապատճառն, ուրկէ որ առած է իւր հոգւոյ էութիւնը եւ գոյութիւնը ու հոգեւոր եւ մարմնաւոր կենդանութեան սկզբնական կենսականութիւնը ։ Զմարդըն տարակուսութեան մէջ պահող, ի սկզբանէ անհունի եւ հունաւորաց մասին ինքնագոյութեան մեծ խնդիր մը եւս կայ, կարծեաց զանազանութեանց անհամաձայնութիւնն է, նա է որ զմարդն միշտ անհանգիստ ընելով դէպի խուզարկութեան կը մղէ եւ մարդն իւր իղձերէն թելադրեալ չարունակ կը խուզարկէ հունաւորները եւ անոնց պատճառները եւ նոցա սահմաններէն անցնելով, կուզէ ինքնագոյացութիւն եւ ամենիմաստ եւ ամենակատարելութիւն ունեցող ինքնագոյ էակն ճանաչել, որ այն էակն ամէն պատճառեալներու սկզբնապատճառն լինի · եւ մարդն անոր արարածոց արարիչն է ըսելով եւ դաւանելով հանգստութիւն մը իմանայ · մարդն այս մասին շատ մը տարակուսական կարծեաց մէջ վարանելով չի յաջողեցաւ եզրակացութեան մը վրայ կայանալով վճռաբար ըսել թէ հունաւո՞րն է ինքնագոյ, թէ անհունն է ինքնագոյ, եւ չարունակ կը խորհի թէ բացարձակն Ն՞իւք է, քէ մի՞ցք է · նոցա մասին մարդն բազմաթիւ կարծեաց մէջէն Յիսուսի սկզբունք ընդունեց, զի նա ըսած է, հոգի է Աստուածը, եւ երկրպագուաց պարտ է հոգւով եւ ճշմարտութեամբ երկրպագանել նմայ ։ Այս սկզբունքէն թելադրեալ մարդն, աւելի բանաւոր կը դատէ ինքնագոյ բացարձակն ընդունել, եւ այս բանականի խորհուրդներուն աւելի մօտ է · վասն զի աւելի բարձր է

խորհող ինքնագոյ հոգեղէն էութիւն մը, քան անձնաւորութեան խորհուրդ եւ իմացականութիւն չունեցող նիւթական ցիր եւ ցան տարերք։

Ողջմտութիւնը կ'ըսէ, բացարձակն խորհող էակ մ'է, տիեզերքը ինքնին իր մը չէ, այլ իրի մը, այսինքն բացարձակ էակի խորհրդոց զօրութեանց եւ իմաստուն օրինաց կարգադրութեանց արդիւնքն է։

Եթէ մարդոյն միտք հաստատապէս չ'ըմբռնէր զբացարձակն, չէր յօժարիր նորա ետեւէն գնալու, մարդն խորհելով կը ճանաչէ. սրտով կ'զգայ թէ ինքը թերի է եւ անկատար, մարդոյն իւր թերի լինելոյն ճանաչումը, զինք կ'առաջնորդէ, կը բարձրացունէ բացարձակի անթերի հասողութեան մէջը փնտռել իւր ըղձալին։ Բանականութեան սկզբունքները կ'ստիպեն զմարդն, բացարձակին բարձրանալ եւ խորհիլ նորա անսահմանութեան, կատարելութեան, սրբութեան եւ ամենակարողութեան, իմաստութեան, մեծութեան եւ ճշմարտութեան վրայ։

## ՓԻԼԻՍՈՓԱՑԱԿԱՆ ԳԻՏՈՒԹԻՒՆԸ

Հ. — Այս գիտութիւնը ի՞նչ կ'ըսէ տիեզերաց վախճանի համար։

Պ. — Փիլիսոփայական գիտութիւնը անգործարանաւոր նիւթոց, եւ գործարանաւոր նիւթոց օրէնքներ միմեանց կարօտ ըլլալու պէտքն առաջ բերելով կ'ըսէ, մէկին սեփհական օրէնքը մինչեւ ցմիւսն կը ձգուի եւ եսանելին անտեսանելոյն հետ կը կապէ։

Անգործարան նիւթոց օրէնքը կ'երթայ գործարանաւորի օրինաց կը հպի, որպէս զի գործարանաւորի ղմութիւնը եւ սնունդ հաստատ պահէ։

Օրէնքը , զբնականն ընդարձակելով , կը բարձր ցունէ հոգեղէն օրինաց որ իւր բնութենէն շատ բար է . ստոյգ է թէ , անգործարան նիւթը , գործարանաւ չնչաւորէն շատ ստորին է , բայց այն բանը որ շնչ ւորի մէջ կը տեսնուի , այն բանը 'ի սկզբանէ անգործա րան նիւթի մէջ ծածկեալ կը մնար , ըստ նախնակ կարգադրութեան եւ նախասահմանութեան : Անգոր ծարան նիւթոյ օրէնքը եւ զօրութիւնն կը բարձրանա գործարանաւորի բարձր սահմանին , զի անոր համա անհրաժեշտ պէտք մի է , գործարանաւորի կազմութիւ առաջ բերելու եւ սննդատուութեամբ զայն կերակրելու եւ պահելու համար : Եւ այս մասին գործարանաւորն , ինքն կը խոնարհի անգործարանաւորի հետ կը միանայ եւ զայն կը բարձրացունէ իրեն ծառայեցնելու :

Բուսեղէն տունկերը , որք անգործարանաւոր են , զի մարդոյն եւ անասնական կենդանեաց պէս կամայական շարժումն չունին , նոքա իրենց յատուկ օրէնքն ունին , որով կ'որոշուին նիւթի անգործարանաւորներէն , սակայն իրենց հաղորդակցութիւնները չ'են կըտրեր , եւ ոչ ալ կ'օտարանան անոնցմէ : Այլ խոնարհելով կիջնեն անգործարան նիւթին , որ կարող լինին սնունդ առնելով իրենց պտղաբերութիւնը ցոյց տալ :

Այսպէս ալ անգործարան նիւթը իւր սեփհական օրէնքն ունի , եւ ինքը իւր օրէնքներով հաստատ կը մնայ :

Գործարանաւորն , անգործարաններուն իջնելով , իւր զօրաւոր ազդեցութեամբն , զայն կենաւորելու սահմանին կը բարձրացունէ , առանց անգործարանաւոր նիւթի սեփհական օրէնքը ջնջելու , միայն թէ անոր օրէնքները նուաճելով , իւր բարձրագոյն օրինաց կը ծառայեցունէ :

Այս օրինաց համաձայն է մարդոյն բնական եւ

բանական հոգեղէն օրէնքներու, միմիանց հետ ունեցած միութեան եւ միաւորութեան կերպը եւ եղանակը ։

Մարդոյն բնական օրէնքը չի դադրիր բնական օրէնք լինելէ, նա իւր սեփհական օրէնքները անջնջելի պահելով հանդերձ, բանականի հոգեւորի օրինաց կը հնազանդի, եւ հոգեւորի օրէնքներէն կը նուաճուի, որով կը յաջողի բանական մարդոյն հոգեղէն բնութեան բարձրանալ ։

Հոգեղէնը կը միանայ բնականի հետ, զբնականն նուաճելով կը բարձրացունէ իւր հոգեղէն կենացը ։

Կըսէ գիտութիւնը, ամէն տեսանելիները կը ծագին եւ առաջ կուգան անտեսանելիէն, եւ վերստին անտեսանելիին պիտի վերադառնան ։

Բնութեան մէջ գտնուած օրէնքները մէկ է, բայց այլ եւ այլ եղանակաւ կը գործեն եւ կը տեսնուին ։

Նիւթը իւր նախնական էութեան մէջ անտեսանելի է, նաեւ զնիւթն 'ի գործ դնող օրէնքն ալ անտեսանելի է ։

Իրաց բնութենէն առաջ եկած օրէնքները, տիեզերական եւ յաւիտենական են. օրէնքը կարգ մի է, որ ամէն բանը իւր սահմանի մէջ պահելով կը կառաւարէ, թէ տեսանելի տիեզերաց մէջ եւ թէ անտեսանելի աշխարհի մէջ ։

Օրէնքը, իբրեւ օղակ, համօրէն տիեզերք միմեանց հետ հաղորդակցութեանց մէջ դնելով կը կառավարէ. համօրէն տիեզերաց մէջ գործող օրինաց սահմանումը, մէկ յաւիտենական օրէնսդրի հեղինակութենէն կը բղխին եւ առաջ կուգան ։

Տեսանելի նիւթական առարկաներու խորագոյն հիմունքը, անտեսանելիին, հոգեւորին եւ մտաւորականին մէջ ծածուկ պահուած կը մնան ։ Զի տեսանելին կեղեւ է, իսկ անտեսանելին ծուծ է, նիւթականները

պատկեր կամ կերպարան են , իսկ անտեսանելին եւ հոգեւորին ստուգապէս ճշմարտութիւն է :

Բնութեան մասունքները որոշող զօրութիւնք , ամբողջութեան մէջ ծածկուած կը մնան : Բնութեան օրինաց միութիւնը այլ եւ այլ արդեանց մէջ կը փայլի :

Ինչպէս որ լոյսը մէկ կեդրոնէ կը բղխի , բայց լուսոյ շառաւիղները զանազան ճառագայթներու բաժնուելով , այլ եւ այլ գեղեցիկ գոյներովը տիեզերաց վրայ տարածեալ կը ծածանին : Անտեսանելին տեսանելւոյն նախորդն է , տիեզերաց ամէն տեսանելիները , անտեսանելւոյն կը դիմեն . զտեսանելին կառավարող օրէնք եւ զօրութիւնք , անտեսանելիէն հոսելով առաջ եկած են : Բնութիւնը այն բաներու թանձրացեալն է , եւ այն բաներն ալ տեսանելւոյն բանին յայտարարութիւններն են . կըսէ Պօղոս առաքեալն , պիտի գայ ժամանակ որ ապականացուն տեղի պիտի տայ անապականին , եղծանելին՝ անեղծանելւոյն , ժամանակաւորն՝ յաւիտենականին :

Երբ ապականացուն թօթափեմք , զանապականն պիտի զգենումք եւ պիտի տեսնումք , ինչպէս որ կը տեսնեմք . եւ մահկանացուն զանմահութիւն կ'զգենու եւ տէր ու ժառանգ կը լինի :

Բնութեան ծոցի մէջ ծածուկ պահուած անալինկալ իրողութիւններ կան , զորս մարդն չի տեսներ , նոքա յանկարծակի կուգան մարդոյն վիճակին կը յեղաշրջեն , մերթ դէպի բարին եւ մերթ դէպի չարն : Ասոնք մարդոյն գիտութենէն եւ կամեցողութենէն դուրս անծանօթ բաներ են , որոց վրայ մարդուն դատումը չի կրնար դատաստան ընել եւ վճիռ տալ :

Եւ ատոնց պատճառները խառնաշփոթ վիճակներէն կ'առնեն իրենց ծագումն :